# ՔԱՂԱՔԱՅԻՆ ՕՐԷՆՔ

## ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

ԸՍՏ ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍԻ, ԹԷՈԴՈՍԻ ԵՒ ԼԵՒՈՆԻ

ԹԱԳԱՒՈՐԱՑ ՀՌՈՎՄԱՅԵՑՒՈՑ

—

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Փարիզի Ազգ. Մատենադարանի հայերէն ձեռագիրներէն Suppl. Arm. 103 թիւը կրողը՝ քաղաքային օրէնքներու ժողովածու մըն է եւ կը բաժանուի երեք մասի.

ա. (եր. 1). — Մխիթար Գօշի Դատաստանագիրքը. պակասաւոր.

բ. (եր. 140). — Ներսէս Լամբրոնացիի Թարգմանած Քաղաքային Օրէնքները.

գ. (եր. 169). — Նոյն Ն. Լամբրոնացիէն թարգմանուած «Համառօտ ժողովումն օրինացս վերաբերին», զոր հրատարակած եմ «Բանասէրի» մէջ (հտ. Թ, եր. 14—18).

Այն ձեռագիրն որուն մէջ կը գտնուին ասոնք՝ 172 մեծադիր երեսներէ բաղկացած նոր ձեռագիր մըն է, նօտրագրեալ գրչութեամբ. Հաւանաբար ԺԹ դարէն. Յիշատակարան չունի, բայց վերջին երեսին տակ դրուած ստորագրութիւն մը, — որ կը կարդացուի «Ոսկան Տէր Գէորգեան Յովհաննիսեանց Երեւանեցի», — ենթադրել կու տայ թէ ընդօրինակողն եղած է նոյն ստորագրութիւնը դնող անձը՝ Ոսկան Երեւանեցի. Սակայն ասիկա այն համբաւաւոր Ոսկանը չէ, որ ԺԷ դարուն մեծ գործ տեսած է հայկական տպագրութեան գործին, 1665-ին Ամստերդամի մէջ եւ 1678-ին Մարսէյլի մէջ հաստատելով հայ տպարաններ. Այս վերջինս իրօք կը կոչուէր Ոսկան Երեւանեցի, — թէեւ ծնած Սպահանի մէջ 1614 թուին, — բայց հոգեւորական (արքեպիսկոպոս եւ վանահայր Ուչոյ վանքին) էր եւ վախճանած Մարսէյլի մէջ, 1674 թուին.

Այսօրուան հրատարակութեան տուածս՝ Ներսէս Լամբրոնացիի Թարգմանած Քաղաքային Օրէնքներն են.

Ներսէս Լամբրոնացի (1153—1198), հեղինակ եւ թարգմանիչ բազմաթիւ գիրքերու, յունարէնէ թարգմանած է բիւզանդեան կայսրերու

քաղաքային ու զինուորական օրէնքները, ինչպէս գրած եմ ասկէ առաջ (1)։ Զինուորական օրէնքներն հրատարակած եմ «Բազմավէպ»ի մէջ (հտ. Դ. էր. 321—328), ձեռագրի մը վրայէն՝ որ կը պահուի Ս. Ղազարի Մատենադարանին մէջ։

Այս օրէնքները թարգմանուած են Կոստանդիանոսի Թէոդոսի եւ Լեւոնի անունը կրող օրինագրքէ մը, որ այնքա՛ն յարգ ստացած էր որ հինգերորդ դարուն ասորերէնի եւ ապա արաբերէնի թարգմանուած է։ Թէեւ իմ ձեռքիս տակ գտնուած ձեռագիրն ո՛չ վերնագիր ունի եւ ո՛չ այս մասին գրուած ծանօթութիւն մը, բայց թարգմանիչը տեղ տեղ յիշատակած է այս երեք կայսերաց անունները. ինչպէս՝ Ներածութեան վերջը — «ի մեծէն Կոստանդիանոսէ... որ եդ զայս օրէնս. հաստատած մէ — «որպէս հրամայէ պայծառն ի թագաւորս մեծն Կոստանդիանոս», եւ ԽԲ ու ԽԴ հատուածներուն մէջ. Թէոդոսի անունը կը յիշուի միայն ՄԴ հատուածին մէջ. իսկ Լեւոնինը՝ ԽԴ. ԽԵ. ԽԶ ու ՀԴ հատուածներուն մէջ։ Սակայն ուրիշ ձեռագիրներ, օրինակի համար Բեռլինի ձեռագիրը (Mss. Orient. Oct. 278) կը կրէ հետեւեալ տիտղոսը. «Աւրէնք թագաւորաց Կոստանդիանոսի Թէոդոսի եւ Լեւոնի (թագաւորաց Հռոմայեցւոց)». ճիշտ այնպէս ինչպէս կը կրեն նաեւ ասորերէն եւ արաբերէն թարգմանութիւնները, իսկ Վենետիկի Մխիթարեանց երեք օրինակներէն մին թէեւ յիշատակարան եւն չունի (2) բայց միւս երկու օրինակներն իրենց վերնագրով ու թարգմանչին կողմէ գրուած մասնաւոր յիշատակարանով կը հաստատեն թէ իմ գործածած ձեռագրիս հետ նոյն են։ Ահաւասիկ ասոնցմէ մէկին, որ ԺԴ դարուն վերջերն օրինակուած է, վերնագիրը. «Աւրէնք յաղթող թագաւորաց քրիստոնէից. Կոստանդիանոսի, Թէոդոսի եւ Լեւոնի. թագաւորաց քրիստոնէից». իսկ յիշատակարանն է.

«Զայս ծայրաքաղ աւրինադրութիւնքս տառապեալ եւ փխղոսով Տարոնի թարգմանեցի 'ի ծերացեալ հելլենացի մատենէ, յուրին ՌԱԵ. 'ի նորաշէն ամուրն Լուլուայ, որ է գլուխ դրանն Կիլիկեցւոց. զոր 'ի բազմամեամանեակեաց յամայութենէն մարդարանակ արար մի յերբարց իմոց Շահնշահ. եւ ըկզործանեալ չինուածն յունաց յիմայէլացւոց՝ շինեաց

---

(1) Le Droit arménien, էր. 6, և «Բազմավէպ», հտ. Գ. էր. 68։

(2) Այս ձեռագրին թիւն է՝ 101, Բ. գ., որմէ օրինակած և հրատարակած եմ «Բազմավէպ»ի մէջ՝ վերոյիշեալ Զինուորական Օրէնքները։ Ասոր մէջ կան, ինչպէս քսի. Լամբրոնացիի թարգմանած քաղաքային Օրէնքները, բայց Վեր. Հ. Բարսեղ Վ. Սարգիսեան իմ գիտնալիս պատասխանելով կըսէ թէ «Ձեռագիրը ոչ յիշատակարան ունի, և ոչ ալ յիշուած բնաւ որ այդ օրէնքները Ներսէս Լամբրոնացւոյն ըլլան»։ Այստեղ հրապարակով կը յայտնեմ շնորհակալութիւնս առ Վեր. Հ. Բարսեղ Վ. Սարգիսեան, որ հաճեցաւ այդ ձեռագրէն մանրամասն նկարագրութիւնը հաղորդել ինձ։

ամբողջոյն. եւ ընդարձակեաց նոյնա զՀայաստանեայս՝ թագաւորն Լեւոնի ձեռն որ 'ի Կիւլիկեայս եւ Ասորւոց գաւառացն ափն. եւ նոյնա կարողացաւ երկրորդ Կապադովկիոյ, յորում մայրաքաղաք Տիանայ. արտաքսանեալ զնորաչէն ամուրն 'ի փառս Քրիստոսի եւ 'ի զաւրութիւն քրիստոնէից. Դարձայ եւ 'ի մեծ եկեղեցին Տարսոնի, յղեցի զթարգմանեալն ստոյգ գրչութեամբ եւ աւանդեցի Հայոց.

« Յամս քահանայապետութեանն Հայոց Գրիգորի, որ երրորդ էր նախնեացն իւրոց 'ի Հռոմկլայն, յաջորդ աթոռոյն, թուին ՈԽԲ. յութեւտասներորդ ամի նորին հայրապետութեան, խնդիր եղեւ առ նոյն սրբազանն 'ի քաղաքաց եւ 'ի գաւառաց բնակչաց՝ քաղաքական աւրինացն. զի որք Իսմայելացւոցն էին իշխանք 'ի քաղաքս եւ դատաւորք, զդատ Հայաստանեայցս ոչ դատէին. այլ զխնդրողսն իրաւանց՝ առ իւրեանց աւրէնս տանէին. զի այս էր 'ի նախնեաց Մելիքացն հրաման առ դատաւորս քաղաքաց՝ յիւրեանց աւրինացն դատ թողուլ զնոսին. Եւ եկեալ ասոխք յեկեղեցին՝ հարցանէին աւրէնս 'ի քահանայից եւ 'ի քահանայապետաց. ոչ ունէին գիրս որով ընտրեսցեն զիրաւունս. զոր եւ այլոց ազգաց ունէին՝ քրիստոնէից եւ մսլիմանաց. այս ինքն հռոմայեցւոց, հելլենացւոց, ասորւոց, եգիպտացւոց, վրաքացւոց, պարսից եւ այժմու իշխողացս Թուրքաց. Ի խնդիր եկին ասա առ հայրապետն 'ի Հայաստանեայց՝ արքունք, կղերիկոսք եւ աշխարհականք. խնդրեալք յայլոց ազգաց եւ նախանձեալք զբարւոքն. եւ խուզեալ ընդ նա մեր յարկեղս գիրս կաթուղիկոսարանին՝ ոչ գտաք աւրէնս. բայց միայն ըզկանոնականսն՝ որ 'ի սուրբ հարցն ժողովելոց էր գրեալ. եւ որ 'ի նոյն յարկեալ 'ի նոցանէ կանոնս զգուշաւորս եկեղեցւոյ. Իսկ քաղաքի աւրէնս ոչ գտաւ 'ի մէջ Հայոց, ոչ յեկեղեցիս եւ ոչ առ իշխանս. Եւ կարի մխտացեալ հայրապետն խնդրէր ասէր առ այլ ազգս. Եւ պատահեալ անձ յասորւոց Թէոդոս անուն կիրթ յիմաստութեան քահանայ, յայտնեաց տեսանել զի գոյր առ ինքն այս համառաւտ աւրինագրութիւնս. եւ հրամանաւ առեալ ինձ տառապելոյ իւր ձեռնասուն որդւոյ Ներսեսի յաղաշրջեցաւ 'ի հայս, նմին յիշատակ բարի. եւ զինի եկեղեցւոյ ուղղութիւն ընթասցի. Յետ որոյ ապա եւ 'ի հելլենացւոց գրոց արարի թարգմանութիւն մովսիսական աւրինաց եւ Լեւոնի եւ Կոստանդեայ աւրինացս. 'ի նմանէ թարգմանեցի եւ զզինուորական աւրէնքս. եւ ընծայեցի որոց սիրեն վարիլ սոյնա եւ հաճոյ գտանիլ Աստուծոյ. եւ կառավարիչք քաղաքաց եւ գաւառաց»

Ասկէ որոշ կերպով կը տեսնուի. ա) թէ Ն. Լամբրոնացի՛ն է թարգմանիչը(1), եւ բ) թէ յունարէնէ՛ («'ի հելլենացւոց գրոց») թարգմանած

---

(1) Պետերման « Monatsb. der Berliner Akad. » ամսաթերթին մէջ (1867 թ. յուլիսի 11) կը յայտնէ թէ այս աշխատութիւնը կատարած է Մխիթար Գօշ

է այս օրէնքները, ո՛չ թէ «ասորերէնէ», ինչպէս կը կարծէ Սախաու (1). Իսկ «Բանասէր»ի հտ. Թ. 14—18 երեսներուն մէջ հրատարակուած ձեռագիրը — «Հռոմայոց ժողովման օրինաց վերայն» — կը կարծեմ թէ նոյնպէս Լամբրոնացիէն թարգմանուած ըլլայ, եւ մանաւանդ այն ձեռագրին վրայէն որ կը գտնուէր «Թէոդոս անուն կիրթ յիմաստութեան քահանայ»ին քով, ինչպէս ըսած է Լամբրոնացի իր յիշատակարանին մէջ, զոր տեսանք վերը։

Այս յիշատակարանին մէջ Լամբրոնացի բացորոշակի կերպով կը յայտնէ, թէ Թէոդորոս քահանան իր աթոռէն Գրիգոր Տղայ կաթողիկոսին յայտնեց. «զի զայլ ևս ինչ այս հռոմանոց աւրէնսդրութիւն». ուրիշն անիկա նոյն է «Հռոմայոց ժողովման օրինաց»ին վերնագրով հրատարակուածին հետ։

Հիմա կը մնայ ուրիշ խնդիր մը, թէ արդեօք այդ «Հռոմայոց օրինադրութիւնք» ասորերէ՞ն էին, թէ յունարէն. — Հհ. Ալիշան (2) եւ Զարպհանալեան (3) կը կարծեն թէ ասորերէն էին, նկատելով որ Լամբրոնացի նոյն յիշատակարանին մէջ կը յայտնէ թէ «յետ որոյ», այսինքն Թէոդորոս ասորի քահանային քով գտնուած Հռոմայոց օրէնքները թարգմանելէն ետքը, «առայ եւ ՚ի հելլենացւոց գիրս արարի թարգմանութիւն մովսիսական օրինացն եւ Լեւոնի եւ Կոստանդեայ օրինացն»։ Բայց նկատի առնել պէտք է, որ Լամբրոնացի կը գտնուէր եբրայեցւոց յունարէնի թարգմանուած «մովսիսական օրինաց» առջեւ, եւ չէր կրնար կեղծել թէ ինք եբրայերէնի վրայէն թարգմանած է զանոնք. ուստի կը յայտարարէր «՚ի հելլենացւոց գրոց արարի թարգմանութիւն մովսիսական օրինացն», եւ ո՛չ թէ եբրայերէնէ. Լամբրոնացի եթէ անգամ ըլլար սեմական լեզուներու, անկասկած այն լեզուներէ թարգմանած աշխատութիւն մը գոնէ թողուր մեզ, քանի որ իր ամբողջ կեանքը անցուցած է հեղինակութեամբ ու թարգմանութեամբ, արտադրելով երեսունի մօտ գործեր, որոնց մէջէն իբր գլուխ գործոց կը բաւէ յիշել իր Ատենաբանութիւնը, յաւերժացնելու համար Ներսէս Լամբրոնացիի անունը։

Ձեռագրիս օրինակներէն ամենահինն է Վենետիկի մէկ օրինակը, որ 1328-ին գաղափարուած է. իսկ ամենէն նորը Փարիզի ձեռագիրն է, զոր

(1) K. Bruns und E. Sachau, Syrisch - Römisches Rechtsbuch aus dem fünften Jahrhundert, եր. 163—64 կըսուի թէ թարգմանութեան հեղինակը կա՛մ Մ. Գոշ ըլլալու է և կամ՝ իր բազմաթիւ աշակերտներէն մ.կը, որ 1200 թուականին միջոցները կատարած է ասորերէնի վրայէն։ Այս մասին տե՛ս աւելի վարը ալ։

(2) Սիսուան, եր. 90։

(3) Մատենագրն. Հյկ. Թրգմնութեանց, եր. 750։

Բերլինի ձեռագրին հետ բաղդատած՝ եւ գլխաւոր տարբերութիւնները նշանակած եմ տեղ տեղ, ինչպէս կը տեսնուի ներկայ հրատարակութեանս մէջ (1)։ Պարիսի եւ Բերլինի ձեռագրերուն իրարմէ ունեցած տարբերութիւնը շատ է. ես միայն գլխաւոր կէտերը նշանակած եմ հոս։

Բերլինի ձեռագիրը՝ որ Պետերմանի սեփականութիւնն եղած է, անոր կողմէ բաղդատուած է ուրիշ ընտիր ձեռագրի մը հետ, բայց յայտնի չէ թէ ո՞րն է այն ձեռագիրը։ Սախաուի հրատարակութեան մէջ նշանակուած են այս բաղդատութիւնները։

Ձեռագրիս լեզուն աղաւաղուած է, անշուշտ օրէնքները ժողովրդականացնելու դիտումով կատարուած։ Ներկայ հրատարակութեանս մէջ ո՛ և է փոփոխութիւն չեմ ըրած ո՛չ լեզուի, եւ ո՛չ ուղղագրութեան։ Նոյն իսկ բնագրին կէտադրութիւնը պահած եմ նոյնութեամբ, տեղ տեղ աւելցնելով սակայն անհրաժեշտ հարկ եղած սրբագրութիւնը փակագծի մէջ։ Իսկ հրատարակութեանս վերջը դրած եմ բնագրին մէջ գործածուած օտար կամ դժուարահասկնալի բառերու նշանակութիւնը։

Ինչպէս պիտի տեսնուի, ձեռագրիս հատուածներու համարներն ու դասակարգութիւնն իրար խառնուած են թէ՛ սկիզբը գրուած Ցանկին մէջ, եւ թէ բուն բնագրին մէջ։ Ես իմ գործածած ձեռագրիս դասակարգութիւնն անփոփոխ պահեցի, միայն Ցանկին մէջ փակագծով նշանակելով բուն կարգը, որ սակայն նոյնութեամբ չի համապատասխաներ բնագրին դասակարգութեան։ Իսկ Բերլինի ձեռագիրը մինչեւ ԾԸ հատուածը Պարիսի ձեռագրին հետ միասին կընթանայ, բայց որովհետեւ ԾԹ հատուածն ամբողջութեամբ կը պակսի Բերլինի ձեռագրին մէջ, հատուածներն այլ եւս չեն համապատասխաներ իրարու մինչեւ ԾԹ հատուածը, զոր Բերլինի օրինակն երկու մասի կը բաժնէ եւ երկու հատուած կազմելով՝ նորէն կը միանայ Պարիսի օրինակին հետ։ Այս անհամաձայնութիւնը փակագծի մէջ նշանակած եմ, մասնաւոր ծանօթութիւններ ալ տալով։

Սախաու իր գործին նոր հրատարակութեան մէջ (E. Sachau, *Syrische Rechtsbücher*, Berlin 1907) կըսէ թէ Վատիկանի Մատենադարանին ասորերէն ձեռագիրներէն Siriaco Borgiano Nº 81 ձեռագիրը կը պարունակէ խմբագրութիւն մը, R II, որ իբրեւ հիմ ծառայած է ոչ միայն ուրիշ ձեռագիրներու, այլ եւ արաբերէն ու հայերէն խմբագրութեանց (2)։ Բայց, ինչպէս վերն ըսի, հայերէն թարգմանութեան յու-

(1) Բերլինի ձեռագիրն օրինակուած է 1739-ին, Մեծ Հայոց մէջ, ինչպէս կըսէ յիշատակարանը (եր. 10), եւ հրատարակուած՝ Բրունս ու Սախաուի վերոյիշեալ «Ասորական-Հռոմէական Օրինագիրքերին» մէջ, որ այս տարի նոր տպագրութիւն մըն ալ ունեցաւ։

(2) Տե՛ս. Revue de l'Orient Chrétien, 1907, No 2, եր. 218—19։

Ճարհճի վրայէն կատարուած ըլլալուն երբեք տարակոյս չունիմ եւ, քանի որ Թարգմանիչն իսկ՝ Լամբրոնացի կը խոստովանի ասիկա իր յիշատակարանին մէջ։

Յունարէն սկզբնական խմբագրութիւնը կը կարծուի թէ համադրուած է Անտիոքի պատրիարքական դիւանատան մէջ, եւ յետոյ տարածուած ամէն տեղ (1)։

Ըստ Սախաուի՝ Պետերբուրգի Մատենադարանին մէջ գտնուող խմբագրութիւն մըն ալ գոյութիւն ունի, որ սակայն հայերէնէ թարգմանուած կը կարծուի (2)։

Կ. Ց. Բ.

(1) M. - A. Kugener, վերայիշեալ R.O.C. թերթին մի եւ նոյն երեսին մէջ։

(2) Syrisch-Römisches Rechtsbuch, էջ 164։

ԻԳ. Վասն ծառայից թէ ոչ են հաւասար տէրանց։

ԻԴ. » փախուցեալ ծառայից թէ գտցին սուտք։

ԻԵ. » որ զայլոց զինուոր զինուորէց[ուց]անէ գաղտ առ իւր։

ԻԶ. » որք վաճառեն զինչս ոխմնաւ։

ԻԷ. » ծառայից զի ոչ կարեն արտաքոյ տէրանցն գործել ինչ։

ԻԸ. » զի ոչ է պարտ ումեք վասն ամենայն մեղաց սպանանել՝ զծառայս իւր ձեռօքն իւրովք։

ԻԹ. Վասն ճշմարիտ արանց որ սպանումն գործեն առանց հրամանի թագաւորաց։

Լ. Վասն որք ազատեն զծառայս պայմանաւ։

ԼԱ. » » » » եւ յետոյ կամին գրել զազատութիւն վկայիւք։

ԼԲ. Վասն որ անձնիշխան է, եւ բերանով իւրով ասիցէ թէ ծառայ եմ։

ԼԳ. Վասն կանանց որ զանձինս ծառայ անուանեն ումանց։

ԼԴ. » որ դողաչարան լինին ծառայից։

ԼԵ. » » գնեն ծառայս եւ յետոյ արատ ինչ գտանեն 'ի նոսա։

ԼԶ. » ծառայից որ պայմանով վաճառին 'ի վերայ ամենայն արատո[յ]։

ԼԷ. » » ազատելոյ եւ որդոց նոցա։

ԼԸ. » » թէ որպէս պարտ է ազատել զնոսա։

ԼԹ. » որ գրաւական ինչ ծախեն։

Խ. » Բ ումանց որ վիճին ընդ միմեանս եւ գնան առաջի են այրք իւրեանց թէ կարող են իշխանութեամբ իւրեանց կանգնել պաուգաց իւրեանց վերակացու։

ԽԱ (Ձ). Վասն կնոջ որ տան թոռանց իւրեանց իրս ինչ (1)։

ԽԲ (Ձա). » առն որ բաժանի 'ի կնոջէ, թէ որպէ՞ս պարտ է զխաչինսն որ բերեալ էր պռոյգ (2) նոյն եւ զաճնն։

ԽԳ (Ձբ). Վասն առն որ կինն դիւահար հանդիպի։

ԽԴ (Ձգ). » » » ունի կին անբժշկելի ցաւօք եւ կամի բաժանիլ 'ի նմանէ։

ԽԵ (Ձդ). Վասն կնոջ որ բաժանի պատճառաւ թէ առնուլ կարող է յորդոցն թէ ոչ։

---

(1) Այստեղ ձեռագրին հատուածներուն կարգը խանգարուած է և Խ-էն մինչև ՀԹ հատուած ցաթքած, թէև կանոնաւորապէս կը շարունակուին հատուածներու համարները, իբր թէ բան մը մոռցուած չըլլար։ Ես կը դնեմ թէ՛ ձեռագրին հատուածներն ինչպէս որ են, և թէ փակագծի մէջ կը նշանակեմ բուն կարգը։

(2) Ձեռագիրն ունի՝ գռոյգ։

ԽԶ (ձե). Վասն կնոջ թէ կարող է իւր հրամանաւ նվանել յառնէ իւրմէ թէ ոչ։

ԽԷ (ձզ). Վասն կնոջ եւ առն որ բաժանին 'ի միմեանց մահուամբ կամ այլ պատճառաւ, եւ կայ 'ի միջին խաչն թէ որպէս առնեն։

ԽԸ (ձէ). Վասն առն որ արձակէ զկին իւր թէ որ պատճառաւ կարէ արգիլել զպռոյգն։

ԽԹ (ձը). Վասն կնոջ թէ որ պատճառաւ կարէ թողուլ զայրն։

Ծ (ձթ). Վասն առն եւ կնոջ որ մեռանին եւ ոչ ունին կտակ, թէ որպէս պարտ է զինչս նոցա բաժանել յորդիսն։

ԾԱ (ղ). Վասն առն որ մեռանի, եւ ունէր միածին որդի, եւ մեռանի որդին, եւ ունի մայր, թէ որպէս պարտ է առնել զինչսն։

ԾԲ (ղա). Վասն առն որ մեռանի առանց որդոյ, եւ մնայ կինն, թէ որպէս պարտ է տալ նմա յընչից առնն, եւ 'ի պռուգացն եւ 'ի մահրէն։

ԾԳ (ղբ). Վասն գործակալաց, թագաւորաց, զի ոչ կարեն այլում բան հոգալ որքան եւ իցեն 'ի գործս արքունիս։

ԾԴ (ղգ). Վասն առն որ աղաւէ զորդիս իւր եւ զդստերս, զի յետ այնր ոչ ունի իշխանութիւն 'ի վերայ որդոց նոցա։

ԾԵ (ղդ). Վասն առն զի ունի իշխանութիւն աղաւել զորդիսն։

ԾԶ (ղե). » » » » » 'ի վերայ որդոց որդոյ իւրոյ եւ ոչ 'ի վերայ որդոց դստերացն։

ԾԷ (ղզ). Վասն առն որ գրէ կտակ, թէ ունի իշխանութիւն փոխել թէ ոչ։

ԾԸ (ղէ). Վասն որ սուտ երդնուն։

ԾԹ (ղը). » որ վաճառեն ինչս ուխտաւ, եւ դարձուցանեն։

Կ (ղթ). » որ կամին հոգոյ զաւակ առնուլ թէ որպէս պարտ է։

ԿԱ (ճ). » » տայ օտար ումեք զժառանգութիւն իւր։

ԿԲ (ճա). » հողէբարձաց, զի յետ կատարման տղայոցն ոչ ունի իշխանութիւն 'ի վերայ նոցա։

ԿԳ (ճբ). Վասն որք առնուն որդեգիր գրով դատաւորաց, զի յետոյ ոչ ունին իշխանութիւն արձակել զատարկս։

ԿԴ (ճգ). Վասն պարտուց զի ով առնու ինք[ն] վճարէ եւ ոչ դատապարտեն զայլ ոք։

ԿԵ (ճդ). Վասն գողոց զի ով ոք որ ըմբռնեսցէ, ոչ ունին իշխանութիւն սպանանել, այլ դատաւորաց է այս հրաման։

ԿԶ (ճե). Վասն որք զերար սպանանեն զի ոչ ունին հրաման արիւն խնդրել առանց դատաւորաց։

ԿԷ (ճզ). Վասն զրկանաց որ զմիմեանս զրկեն մարդիկ։

ԿԸ (ճէ). » որ ոք առէ վասն այլոյ իրս չար, զի թէ ոչ կացցէ իրաւամբք 'ի վերայ ասացելոցն, ինքն վճարէ զնա։

ԻԹ (ճը). Վասն որ առէ ոք ընդ ընկեր իւր, թէ գնէ զայս ինչ. ինձ ընչիւ քո եւ ես վճարեմ, եւ ոչ վճարէ. թէ ում լինիցի գնեալն։

Լ (ճթ). Վասն դատաւորաց զի ոչ ունին հրաման յօրինացս գնել ինչ, որչափ են 'ի գործ արքունի. նոյնպէս եւ որ փոխէ տուն այլոց, ոչ կարեն գնել իրս փոխառողացն։

ԼԱ (ճժ). Վասն որդոց որ անարգեն զհայրս։

ԼԲ (ճժա). » զի ոչ ունին որդիք պատիւ ընդ հարց իւրեանց յատենի։

ԼԳ (ճժբ). Վասն որք տան իրս միմեանց հաստատութեամբ թղթով։

ԼԴ (ճժգ). » բաժանման ընտացւածոց 'ի մէջ եղբարց թէ լինի վկայիւք եւ ոչ խղթովք թէ հաստատուն են բաժինքն։

ԼԵ (ճժդ). Վասն որ բաժանէ մարդ զմարդ. կամ կիսնէ, կամ վղենկի։

ԼԶ (ճժե). » որ բամբասէ մարդ զմարդ չար խօսիւք առ դատաւորս։

ԼԷ (ճժզ). Հրաման տայ օրէնքն այնմ որ բամբասեցաւ, բամբասել առաջի դատաւորին զչարախօսն իւր։

ԼԸ (ճժէ). Վասն գողոց որ 'ի գիշերի գողանան։

ԼԹ (ճժը). » » մարդկան որդոց։

(ճժթ). » որք բամբասեն առ դատաւորս զայլս (1)։

Խ (ճի). Վասն որք առանց թագաւորի հրամանաց գերեն զօտար երկիր։

ԽԱ (ճիա). Վասն որ զայլոյ տուն պատառէ գողութեամբ։

ԽԲ (ճիբ). » որք գործեն գործս պէսպէս չարեաց։

ԽԳ (ճիգ). » որ առնու հայրենի ժառանգութիւն, եւ պարտք կայ 'ի վերայ հայրենեացն, որ զժառանգութիւնն առնու նա վճարէ։

ԽԴ (ճիդ). Դարձեալ 'ի նոյն խորհուրդ։

ԽԵ (ճիե). Վասն որ գնեն եւ ծախեն ապախտիմոնաւ եւ չդադարին 'ի խօսս։

ԽԶ (ճիզ). Վասն որք գան օտարք միաբանին, զի 'ի միասին կեցցեն աշխարհականք չէ ընդունելի։

ԽԷ (ճիէ). Վասն որդոց դասերաց զի ոչ հնազանդիլ պարտին հաւրն։

ԽԸ (ճիը). » բաժանման ժառանգութեան 'ի մէջ եղբարցն, զի թէ որկանք լինի 'ի մէջ նոցա դարձեալ վերստին խնդրի զինչ ինն ամին։

ԽԹ (ճիթ). Վասն որ զձգած տղայ առնուն եւ սնուցանեն։

Ծ (ճլ). Վասն որ գրաւական առնուն եւ փոխ տան զի յետ իւրեց խնդրելոյ զպարտսն, իշխանութիւն ունի ծախել զգրաւականն։

ԾԱ (ճլա). Վասն որք տան փոխ եւ չառնուն գրաւական եւ յետոյ առնուն։

ԾԲ (ճլբ). Վասն առանց որ լինի ներքնատունն այլում եւ վերնատունն այլում թէ զինչ առնեն։

---

(1) Այս հատուածին համարը չէ նշանակուած։

ՂԳ (ճլգ). Վասն որք գրաւական դնեն զանազան իրս եւ փոխ առնուն։

ՂԴ (ճլդ). Վասն որ առնուն փոխ եւ դնեն երաշխաւորս եւ գրաւականն առ երաշխաւորն է, եւ հանդիպի ծախել զգրաւն։

ՂԵ (ճլե). Վասն որ առնու 'ի փոխ յայլոց եւ տայ այլոց։

ՂԶ (ճլզ). » » » 'ի փոխ բազմաց, եւ չժամանէ վճարել եւ մեռանի թէ յետ մահուանն ո՞րք 'ի փոխատուացն գան եւ վճար առնուն։

ՂԷ (ճլէ). Վասն որ առնուն փոխ եւ գրեն գրաւականս։

ՂԸ (ճլը). » բժշկաց եւ վարդապետաց, եւ այլոց գիտնականաց աղքատ լինել։

ՂԹ (ճլթ). Վասն որք առն բժշկաց իւր վասն հիւանդաց չէ պարտ առնուլ յետոյ։

Ճ (ճխ). Վասն որք փոխ առն պայմանաւ, չունին իշխանութիւն յառաջ քան զպայմանն խնդրել զփոխսն։

ՃԱ (ճխա). Վասն որք ունին զինչս եւ զատացեալս որբոց 'ի պահեստի թէ առնուն վարձ թէ ոչ։

ՃԲ (ճխբ). Վասն թէ մեռանի մարդ առանց կտակի եւ թողու որդիս, եւ թէ մեռանին յորդոցն, թէ ո՞րպէս պարտ է ժառանգել մօրն ընդ որդոցն։

ՃԳ (ճխգ). Վասն թէ մեռանի մայր եւ թողու Ա. որդի եւ մեռանի, եւ տայ զինչն հօրն, թէ ինչ բաժին հասանի մաւրն տղայոց եւ ազգականացն։

ՃԴ (ճխդ). Վասն որ առնու որբ տղայ եւ սնուցանէ, եւ ունի տղայն հայրենիքս եւ պարտս։

ՃԵ (ճխե). Վասն թէ գնայ ոք առնու դահեկան 'ի փոխ եւ մեռանի, կամ փախչի թէ ո՞ւմ է պարտ որ վճարէ յետոյ։

ՃԶ (ճխզ). Վասն որդոց որ գողանան զինչս հօրն իւրեանց։

ՃԷ (ճխէ). Վասն որ տայ որդոց իւր ժառանգութիւն թէ յետ ունի, իշխանութիւն ունի թէ ոչ։

ՃԸ (ճխը). Վասն որ դնեն կտակ 'ի պահ, եւ թէ հանդիպի այրել կտակին.

ՃԹ (ճխթ). Վասն որ աւթին 'ի պանդոկի, եւ կորուսանեն իրս թէ ով վճարէ։

ՃԺ (ճծ). Դարձեալ 'ի նոյն խորհուրդ։ —

# ՔԱՂԱՔԱՅԻՆ ՕՐԷՆՔ

## ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

### ԸՍՏ ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍԻ, ԹԷՈԴՈՍԻ ԵՒ ԼԵՒՈՆԻ

### ԹԱԳԱՒՈՐԱՑ ՀՌՈՎՄԱՅԵՑՒՈՑ

—

Աւրէնք բարիւք զճշմարիտ Տէր Աստուած 'ի սկզբանէ Ա. մարդոյն որպէս յառաջին գիրն արարածոց եցոյց մեզ օրէնս եւ գրեաց մեզ Մովսէս. եթէ եդ Աստուած օրէնս մարդոյն 'ի ծառոյն որ 'ի մէջ դրախտին ոչ ուտել. եւ 'ի ծառոյն գիտութեան բարոյ եւ չարի. զի եւ ոչ պահեաց զօրէնսն անդէն առ նա ուսաք զաւրինազանցին զպատուհասն քանզի ասաց Աստուած ցմարդն. փոխանակ զի կերար 'ի ծառոյն յորմէ պատուիրեցի քեզ չուտել. անիծեալ լիցի երկիր 'ի գործս քո. եւ 'ի հող դարձցիս ուստի առար. եւ այսպէս զաւրինազանցսն պատուհասեալ. ելան արտաքոյ դրախտին. եւ առաքեաց պանդխտել յաշխարհ. յորում ծնաւ Ադամ զՍէթ. եւ զԷնովս եւ մինչեւ ցՆոյ. եւ Նոյ ծնաւ զՍեմ. Սեմ ծընաւ զԱրփաքսադ. եւ ըստ կարգի սերին ծնունդքն 'ի նմանէ մինչեւ ցԱբրահամ. որ ծնաւ զԻսահակ աւետաւքն Աստուծոյ. եւ Իսահակ զՅակոբ. եւ Յակոբ զերկոտասան նահապետքն. որքս առին աւրէնս վայելուչս յԱստուծոյ ամենակալէ. եւ ժառանգեցուցին հարքն որդոց զժառանգութիւնս եւ զստացուածս իւրեանց. Որպէս աւրհնեաց Նոյ զորդիս իւր եւ ետ նոցա ժառանգութիւն. եւ Աբրահամ ժառանգեցոյց հրամանաւն Աստուծոյ զինչս իւր որդոյ իւրոյ Իսահակայ՝ զաղախնածինն զԻսմայէլ Աստուծոյ բանիւն արտաքս վարեաց 'ի ժառանգութենէ. Նոյնպէս եւ Սահակ Յակոբայ. եւ Յակոբ 'ի վախճանելն յեգիպտոս ժառանգեցոյց զՍիկիմ Յովսեփայ որդւոյ իւրում. զոր ասաց թէ սրով իմով եւ աղեամբ ստացայ. Եւ 'ի սոյնմէ օրէնք ընդրեցաւ առաքինիք ժառանգեցուցանել

իւրաքանչիւր զստացուածս իւր որդւոց իւրոց. եւ յայս գեղեցիկ պատճա-ռէս առին ամենայն ազգ օրէնս, զստացուածս իւրեանց ժառանգեցուցանել որդւոց իւրեանց. Իսկ թէ ոչ լինիցին որդիք, ապա ժառանգեցուցանէ ում կամի, եւ ազգ հեթանոսաց, թէպէտ եւ յայլ օրէնս այլայլեցին, յայս սովորութիւնս ուղիղ գնացին Մինչեւ ցՏէր մեր Յիսուս Քրիստոս որ էառ մարմին 'ի որբոյ Կուսէն, եւ կամաւ հաւր եղեւ մարդ, ազատ-եաց 'ի մոլորութենէ զորդիս մարդկան, որ եւ աւետարանական վարդա-պետութեամբն իւր զօրէնս գեղեցիկս եւ կենդանարարս եկեղեցւոյ իւրոյ. եւ 'ի սուրբ եկեղեցի իւր յարոյց թագաւորս բարեպաշտս յաթոռ ինք-նակալութեանն Յունաց. եւ են սոյն միաս 'ի հաւատս ճշմարիտ, որք եւ հնազանդեցին զամենայն ազգի կարգս օրինացն Քրիստոսի, եւ նովաւ վարեցին զթագաւորութիւնն իւրեանց. քանզի ամենայն ազգ որ կամեցան օրինօք վարիլ 'ի հեթանոսաց 'ի Մովսիսէ առին զպատճառն, եւ եդին օրէնս զանազանս քաղաքականս 'ի ժամանակս իւրեանց. որ են նոցա իմաստունք երեւեցան եւ նմանեցան Իսրայէլացոցն որք վարէին օրինօքն Աստուծոյ. զի եւ ոչ այլ ոք ի նոցանէ ստուգի ունել գիր կանխաւ քան զՄովսէս, այլ նախագոյն էր Մովսէս, օրինօքն զոր ետ նմա Աստուած, քան զամենայն իմաստունսն Հելլենացոց եւ Աթենացոց եւ Հռոմայեցոց եւ Մսրացոց, որք են Եգիպտացիք, եւ որպէս պարգեւ օրինացն 'ի ձեռն Մովսէսի Իսրայէլի, որք օրինօք վարեցան. եւ զայս ազգս 'ի նա-խանձ բերի ածին քաղաքական օրինօք բարեկարգել մինչեւ 'ի գալուստ Տեառն մերոյ, Որ խափանեաց եւ հնացոյց զօրէնսն Մովսէսի իւրով սուրբ աւետարանաւն. եւ կոչեաց զՀրէայս եւ զհեթանոսս յաւետարանական օ-րէնս իւր որում հաւատացին երանեալ եւ փառաւորեալ թագաւորք. եւ սկսեալք 'ի մեծէն Կոստանդիանոսէ մինչեւ ցայս, որ եդ զայս օրէնս

Կանոն առաջին վասն ժառանգութեան։

Ա. — Հայր (1) ոք եթէ մեռանի եւ ոչ գրէ կտակ, եւ թողու որ-դիս արու եւ էգս, միապէս ժառանգեն. եւ եթէ գրէ կտակ եւ ժառանգե-ցուցանէ որդւոյն որպէս եւ կամի, եւ դստերացն տայ միոյ միոյ զբաժի-նսն իւրեանց, որ լինի յերից մասանցն մի մասն, եւ Բ մասն կացու-ցանէ զժառանգութիւն որդւոց իւրոց կամօք իւրովք. Իսկ եթէ աւելի ինչ կամի տալ որդւոց իւրոց, իշխանութիւն ունի. ապա թէ ոչ ունի արու զաւակ, եւ ունի դուստր ժառանգէ զինչս հաւրն, ապա թէ ոչ են որդիք, ժառանգեցուցանէ ում կամի. Իսկ թէ յանկարծակի մեռանի, եւ ոչ ունի որդիք, եւ ոչ գրէ կտակ, ժառանգէ զնա հայրն իւրն, եւ թէ

(1) Բեռլինի ձեռագիրն ունի՝ Այր

չիցէ կենդանի հայրն. ժառանգեսցեն եղբարքն եւ քորքն. եւ թէ մայրն կենդանի է, եւ նա եւս համարեսցի իբրեւ զմի յորդոցն. եւ հաւասարեսցի 'ի ժառանգութեանն.

Բ. — Եթէ մեռանի մարդ յանկարծակի եւ ոչ գրէ կտակ եւ հայր եւ մայր ոչ ունի եւ ոչ որդիս. հաւր եղբարքն թէ կան, նոքա ժառանգեն. եւ թէ հօրեղբարց ազգն անցեալ իցէ. յառաջ կոչին որդիք քուերցն. իսկ թէ անցեալ է եւ ազգս այս. որդիք հօրաքերցն յառաջ կոչին արուազաւակքն. եւ թէ ոչ կան արուք. մտանեն էգքն, եւ այսպէս կալցեն զժառանգութիւնս 'ի գաւս եւ ի ժամանակս.

Վասն ժառանգութեան.

Գ. — Զառաջին կանոնն գրեցաք հաւասար ժառանգել որդոցն եւ դստերացն, յորժամ հայրն մեռանի անկտակ. բայց յորժամ ոչ են որդիք եւ դստերք. այլ հեռի ազգականքն ոչ ժառանգեն ընդ հօրեղբարսն, կամ ընդ եղբարսն եւ ընդ որդիս նոցա. կանայքն եւ որդիք նոցա. այլ ունին կանայքն ժառանգութիւն ընդ եղբարս եւ ընդ ազգականս իւրեանց. որպէս օրէնքն քննեն զմաքուր սերմն. եւ որ մօտաւոր է մերձեցուցանէ զնա 'ի ժառանգութիւն, անտարբերաբար այսինքն առանց կարծեաց. ապա թէ մերձաւոր ազգն, յայնմհետէ մերձենան, եւ այսպէս լինի միւսն զմիւսոյն յընտանութիւն. եւ թէ մեռանի այրն եւ կենդանի է հայր նորա, չունի իշխանութիւն գրել կտակ. թէպէտ եւ ունի որդիս, քանզի 'ի ներքոյ հնազանդութեան հօրն բերում է. եւ զոր ինչ ստանան որդիքն յաւուրս կենդանութեան հօրն իւրեանց կա[մ] հաւուն իւրեանց ընդ ձեռամբ հարցն միայ.

Դ. — Հարցանեն զօրէնս թէ որք մանկագոյն են, որոնք կարող են գրել կտակ. եւ կամ քանի ամացն կարող է գրել. Աղջիկն մինչեւ լինի ԺԲ ամաց 'ի ներքոյ ձեռաց է եպիսկոպոսին եւ ոչ կարէ առնել կտակ. եւ յետ ԺԲ ամացն ելանէ 'ի հնազանդութենէ հրամայողին. եւ իշխանութիւն ունի առնել զտիաթիկ. իսկ արու մանուկ մինչ 'ի ԺԴ ամն 'ի ներքոյ հնազանդութեան հրամայողին է. այսինքն որք հոգաբարձք լինին եղեալ 'ի թագաւորաց. 'ի վերայ ընչից որդոց. որք են եպիսկոպոսք. եւ թէ այլ ոք յաշխարհականաց եղեալ լինին հրամանաւ թագաւորաց. եւ երբ լինի մանուկն ԺԵ ամաց ելանէ 'ի հնազանդութենէ հոգաբարձուին մինչեւ ցԻԵ ամն լինի մանուկն այր կատարեալ.

Վասն փեսայի մեռանելոյ.

Ե. — Եթէ մեռանի փեսայն, եւ կամի հայր կնոջն հոգալ զորդիսն, եթէ տայ երաշխաւոր առնու իշխանութիւն հոգալ. իսկ հայր որ 'ի մե-

ամուսնոյն զոր կտակ եւ որդւոյն որ միայն որպէս անուանէ, տեսուչս եւ վերակացուս. կարէ նա հոգալ զորբսն եւ չտալ երաշխաւոր. ապա թէ մայրն մեռանի եւ ոչ առնէ կտակ, եւ թողու որդիս, եւ պատնի յորդոցն ի՛ւ ամաց. եւ նա կարող է հոգալ զեղբարսն եւ սահմանել, եւ չտալ երաշխաւոր. Իսկ թէ մանկագոյն են որդիքն որպէս ասացաք, չարար կտակ հայրն, թէ ունի եղբարս. հրաման տայ օրէնքս սահմանել 'ի նոցանէ, զոր պարտն էր լինել տեսուչ, եւ սահմանաւեղ եղբաւր որդոցն. եւ թէ ունի եղբայր կամ եղբաւր որդի կատարեալ լինի այսու օրինակաւ վերակացու եւ հրամայօղ եւ տեսուչ հօրեղբօր որդւոյն Դարձեալ թէ որ մեռանի ոչ ունէր որդի կամ եղբայրս, եւ ոչ եղբօր որդիս, եւ ոչ որդի մեծ հասակաւ, որ կարող լինի այնմ, եւ ոչ գրեաց կտակ, եւ յանձն առնու մայր որդւոյն հոգալ զմանկունսն իւր. պարտի նա գնալ եւ ծանուցանել դատաւորի տեղոյն եւ առնէ դաշինս. ոչ լինել առն մինչեւ հասուցանէ զուխան յորբերն. Իսկ եթէ չկամի բառնալ զհոգս որդւոյն. հրամայէ օրէնքս զի իշխողք քաղաքին կացուցանեն քննող եւ տեսուչ որբ տղայոցն, եւ տան զվարձս նոցա ըստ պատշաճին. եւ որ զայս յանձն առնու հարկ է տալ երաշխաւորս. զի զինչս տղայոցն պահեսցէ անվնաս. բայց թէ գրեալ է անուանք նոցա 'ի կտակն որպէս վերոգրեցաք. չտան երաշխաւոր. զի կամաւ ետ ընտրաս հայրն հոգալ զիւր որդիսն։

Վասն ստացեալ որդոց.

Ձ. — Եթէ ստանայ հայրն որդիք եւ գան 'ի կատարելութիւն եւ ոչ հնազանդին հօրն թէ կամի հանել զնոսա 'ի ժառանգութենէն, իշխանութիւն ունի 'ի վերայ ստացուածոց իւրոց. Բայց յինն մասնէ ընչիցն, մին մասն հրամայէ օրէնքս տալ նոցա. Եւ է այսպէս. զբաւանդակ ինչսն ընդ չորս բաժանէ. եւ զմի մասն 'ի չորիցն Թ մասն առնէ, եւ յինն մասնէն հաւասարէ 'ի վերայ նոցա. որչափ եւ են անհնազանդքն, թէ արուք եւ թէ էգք. եւ յորժամ գրէ կտակ հայրն, որ արտաքսեաց զորդիսըն, եւ օտար ժառանգ թողուլ, հրամայէ օրէնքս անձնիշխան թողուլ զժառանգիչն զի անքամբաս միասցէ կտակն իւր, եւ այսոքիկ են որք ոչ են արժանի ըստ հօրն ձգելոյ արտաքս ժառանգութեանն յարաչնութեան, վատնողքն ընչից եւ նման սոցին, այսպիսեացս կարէ չտալ զժառանգութիւնն, եւ եթէ տայ բամբասի կտակն վասն անհնազանդ որդւոյն յազգատոհմէն իւրմէ.

Վասն որ գրէ 'ի կտակն եւ չկարէ յետոյ խափանել.

Ի. — Եթէ գրեն զոք 'ի կտակն. եւ նա ոչ կամի առնուլ զժառանգութիւնն, կարող է. ապա թէ գրի 'ի կտակն. յետոյ ոչ կարէ թողուլ.

եւ Մէր յառաջ քան զամուսինն, սա այլ ամեր ունի իշխանութիւն

## Հոգեբարձ որ է պիտրոպոս

Ը. — Եթէ հոգեբարձուս վաճառել յինչիցն. եւ տալ ՚ի հարկս հարկահանաց՝ եւ կամ ՚ի փոխ պարտուց, ոչ է կարող առնել առանց կամաց դատաւորին այլ ծանուցանէ նմա. եւ հրամանաւ նորին ծախէ. ճշգրիտ յարգեանցն որ բաւական է հարկին որ ՚ի վերայ կայ նոցա

Թ. — Եթէ ոք առնէ ուստր, որ է մանր քան արբունսն. եւ քան հազարից անձին գին արժէանն. եւ դարձեալ կամի առնել ՚ի բաց. եթէ իւր որդի է. կամ զաւակն որդի, կարող է առնել ՚ի կենդանութեան իւրում զաւակայ բաժինն

Ժ. — Իսկ դարձեալ, թէ ոք գրէ տուր եւ հաստատէ. եւ ժամանակ չանցանէ ՚ի վերայ. եւ չլինի հաստատութիւն, ոչ է այն ինչ ճշմարիտ. եւ թէ որդոց կամ զաւակ գրէ. նոցայն հաստատուն է, օտարացն ոչ է հաստատուն

ԺԱ. — Եթէ ոք զամենայն ստացուածս իւր գրէ ախաթիկ, ամեք ախտիկան. հրամայեն օրէնքս որ մինչեւ ցինն թողու այլինքն զչորից զմինն բաժանէ յինն. եւ երրորդ մասն միայ ժառանգաւորացն

ԺԲ. — Այր ոք եթէ ունի Բ կին. եւ առաջինն եբեր պառոյգ. եւ երկրորդն ոչ. եւ երկոցունցն եղեն որդիք. եթէ կամի հայրն ամենեցուն միապէս տալ զժառանգութիւնն, կարող է տալ. եւ համարի զորդին ոք առաջնոյ կնկանէն իբրեւ զօտար ժառանգիչս. եւ չառնուանէ զնոսա իբրեւ զորդիս. զոր կամիցաւ ժառանգս թողուլ. իսկ եթէ ոչ առնէ կտակ, որդիք պառուզաւք կնոջն ժառանգեն զամենայն ինչս

ԺԳ. — Այր ոք եթէ ունի որդիս արու. եւ որդիքն մեռանին առաջի նորա. եւ չունին որդիս. եթէ ունին զաւակս ամուսնացեալս, որք ունին որդիս. եւ որդիքն մնացին. եւ զաւակքն մեռեալ են. եւ առնէ զախաթիկ. եւ տայ զժառանգութիւն որդոց զաւակացն կարող է առնել որպէս եւ կամի. եւ թէ ունի եղբայր, կամ եղբօր որդիս, ոչ կարեն հակառակել. իսկ եթէ մեռանի առանց կտակի (,) եղբարքն եւ եղբօր որդիքն ժառանգեն. եւ թէ չունի եղբայր, հօրեղբարքն ժառանգեն. եւ որդիքն ժառանգեն ընդ նոսա. իսկ եթէ հայրենի ազգն հատեալ է. ապա զաւակաց որդիքն մտանեն ՚ի ժառանգութիւնն. եւ թէ զաւակաց ազգն հատեալ է. քուեր որդիքն մտանեն յամենայն ազգականութիւնն. որ եւ միան կենդանիս, վարուքն ընտրեն ժառանկ. քանզի խափանեալ է իգացն ժառանգութիւն, որչափ կայ արու ժառանկիչ. իսկ եթէ ոչ գոյ, ապա մտանեն էգքն ՚ի ժառանգութիւնն

ԺԴ. — Այր ոք եթէ կամի գնել տուն կամ ծառայս. եւ այլ ինչս որ ՚ի վաճառանոցն ծախի եւ առնեն չափ իւրեանց հաշւոյն. եւ ախմոն

չամանս, զզինչն որ հաւանեցան միմեանց չլծորեն. բայց միայն բանի- հատին զլծիան, հրամայէ օրէնքս, որ ոչ է կարող այլ ումեք վաճառել. այլ առաջնոյն որ զգինն եհատ, իսկ եթէ առաջինն թողու 'ի բաց կամօք իւրովք, ապա ընչիցն առնու 'ի նմանէ թուխթ. եւ զանուն իբրայն գրէ 'ի նորքան, եւ տայ զթուխտն 'ի մարդն որ ճշմարիտ գնողն է.

ԺԱ. — Եթէ ոք ազատէ զորդիս իւր եւ կամ զորդիս որդոց իւրոց (,) պարտ է գրել նոցա գիր ազատութեան առաջի դատաւորին, եւ գոհանայ զնոցանէ վասն հնազանդութեանն. զոր ցուցին զիւրեւ, եւ մեծարեալ պատուեցին որպէս վայել էր ծնօղին, եւ վասն այնորիկ ազատէր զնոսա 'ի հնազանդութենէ իւրմէ անձնիշխան լինել. եւ թէ կամի տալ տուրս ինչ նոցա կարող է բայց առաջի դատաւորաց պարտ է տալ. եւ որդիքն որ ազատեցան, այլ ոչ կարեն 'ի ժառանգութիւն հօրն մերձենալ. այլ լինին օտար յամենայն ժառանգութենէ մահու եւ կենաց. եւ զկնի ազատութեանն որ եղեւ առաջի դատաւորաց, այլ ոչ կարէ գրել յերեսս նոցա կտակ. այլ 'ի ժամ մահուն ժառանգեն զնա որդիքն եւ դստերքն որք յետ ազատութեանն եղեն, կամ այլ ազգականքն, զի չեն ազատեալքն այնուհետեւ պարտական հնազանդութեան հօրն, եւ թէ պատահի մեռանել ազատ որդոցն, եւ հայրն կենդանի է, չկարեն արգիլել զտխաթիկն առնել, այլ ինքեանք զինչս եւ զստացուածս իւրեանց սահմանեն, որպէս կամին, զի ազատք են 'ի հնազանդութենէ հօրն իւրեանց որդիքն.

ԺԲ. — Եթէ ոք առնէ կտակ, եթէ առողջ է, թէ հիւանդ, եւ կամի ազատել զծառայս իւր, թէ Ա է, թէ Բ, կարող է ազատել. եւ թէ Գ են զերկուսն պարտի թողուլ. եւ 'ի չէն մինչեւ ցտասն, զկէսն պարտի թողուլ. եւ 'ի ժէն մինչեւ լն 'ի միոյն երիցն թողուլ եւ լնէն մինչեւ ցծ. եւ միւսն չորիցն կարող է թողուլ ապա թէ աւելի ազատէ քան զոր հրամայէ նոմոսն, աւելին միայ ժառանգաւորացն. Իսկ եթէ ոք առնէ կտակ, եւ գրէ ազատ զամենայն ծառայսն միան, ամենեքեան ծառայ ժառանգաւորացն է.

ԺԳ. — Եթէ ոք կամի ազատել (1) զծառայս իւր, առաջի եպիսկոպոսաց պարտ է եւ Քահանայից ազատել. եւ թէ 'ի գաւառս աշխարհին լինի քորեպիսկոպոսին առաջի, եւ երիցանցն որպէս հրամայէ պայծառն 'ի թագաւորս մեծն Կոստանդիանոս.

ԺԴ. — Յորժամ զծառայ իւր ոք ազատէ պարտ է եւ զստացուածս եւ զինչս իւր ընդ նմին ազատել 'ի նոյն գիրն, զի թէ ոչ գրէ յանուանէ զստացուածսն զոր ազատեաց զկնի ծառային յորժամ վաղճանի տէր ծառային, առնուն զամենայն ինչսն ազատ ծառային ժառանգիչքն ազատողին.

---

(1) Ձեռագիրն ունի՝ առատել։ ճիշտ ունի նաեւ Բեռլինի ձեռագիրն.

ԺԹ. — Հարցումն. Եթէ ազատէ ոք ծառայ, կարող է դարձեալ առնուլ յետս թէ ոչ. Պատասխանի. Եթէ ցուցանել կարէ վկայիւք. զի անարգի եւ արհամարհի 'ի նմանէ. կարող է դարձեալ առաջի գլխաւորի տեղոյն, եւ ցուցանէ եւ նորա գիտութեամբն առնուլ յետ զծառայն։

Ի. — Հարցումն. Եթէ ոք ազատէ ծառայ, կարող է 'ի սեփհական ընչից իւրոց տալ նմա թէ ոչ. Նմանապէս եւ որդոյ ծառային. Պատասխանի. Հրամայէ նմին օրէնքս համարձակութեամբ՝ առնել զայն։

ԻԱ. — Եթէ ստանայ ոք ծառայ եւ լինի 'ի մէջ տուրեւառութեան, սահման որ ոչ է փախչող եւ բարեմիտ է եւ անարատ 'ի վերայ այսր պարտի վաճառողն գնողին տալ համբերութիւն Զ ամիս, առ 'ի վարձել զնա եւ 'ի Զ ամսին եթէ գտանի 'ի նմա արատ, իշխանութիւն ունի յօրինակս դարձուցանել եւ առնուլ զինչս իւր. իսկ եթէ փախչի ծառայն 'ի սահմանեալ Զ ամսին նմա է հարկ որ ստացաւ, խնդրել եւ գտանել, եւ տալ 'ի տէրն իւր, եւ ապա առնուլ զգինն իւր յետս։

ԻԲ. — Եթէ զծառայ ոք ծախէ պայմանով, թէ լաւ է, թէ ոչ, եւ լինու պայմանն, յետ այնր ոչ կարէ գնողն դարձուցանել 'ի տէրն բայց միայն թէ յետոյ գիտենան, թէ այսահար է. այս պատճառաւս դարձուցանէ եւ նմա հարկ է առնուլ։

ԻԳ. — Եթէ ոք հրամայէ ծառային իւրոյ յատենի փոխան իւր խօսել եւ առնել իրաւունս ինչ. չունի հրաման յօրինակս ծառայն խօսել վասն նորա. զի ծառայն եւ անձնիշխանն չեն հաւասար։

ԻԴ. — Եթէ ոք ընդունի առ ինքն զփախուցեալ ծառայ եւ գիտէր որ ծառայ էր, հրամայէ օրէնքս զի որ ընդունեցաւ որպէս ծառայ քարշեսցեն զնա 'ի դատաստան տէրք ծառայքն այնորիկ։

ԻԵ. — Եթէ ոք ընդունի զինուոր որ ոչ է իւր եւ գրած է յայլոց դիւանագիր, եւ գիտաց, թէ յայլ իշխանի զինուորաց էր, եւ ոչ դարձոյց յինքենէ այլ ստացաւ յիւր գունդն, որպէս զինուորն նոյնպէս եւ նա կշտամբի 'ի տեառնէ զինուորին։

ԻԶ (իէ). — Եթէ ոք ծախէ ինչ եւ առնու առհաւատչեայ այսքինչն ափմոն, եւ դարձեալ 'ի յետ առնու, հրամայէ օրէնքս կրկին դարձուցանել զառհաւատչեայն 'ի տուողն։

ԻԷ (իզ). — Եթէ ծառայ ոք ինչ կամի գնել տէրն իւրոյ հրամանաւ իշխանութիւն ունի առնել։

ԻԸ. — Ոչ տայ հրաման օրէնքս ումեք սպանանել զոք զծառայ իւր ձեռօք իւրովք. Իսկ եթէ արար ծառայն արժանի ինչ մահու, տայ նա զծառայն 'ի ձեռս դատաւորին եւ նա առնու զվրէժ արժան գործոյն։

ԻԹ. — Նա եւ մարդ որ ոչ ունի հրաման 'ի թագաւորէ, կամ 'ի դատաւորէ եւ սպանանէ զոք, կամ զգող, կամ զմարդասպան, կամ զմահապարտ ծառայ՝ ինք մեռանի յաւրինացն։

Լ. — Եթէ ոք ազատէ զծառայ իւր պայմանաւ, եւ սահմանէ ամս յայտնիս ծառայել որդւոց իւրոց, կամ ժառանգաւորի զկնի ազատութեանն հրաման ունի յօրինացս որպէս զանձնիշխան շրջել։

ԼԱ. — Եթէ կամեսցի այր զկնի պայմանաւ ազատութեան ծառա-յին զպայմանն ցուցանել առաջի եկեղեցւոյ կամ վանից եւ կամի զտխա-թիկն գրել զանխրատայի է։

ԼԲ. — Եթէ ուրուք անձնիշխան գոլով 'ի հարցանել զնա յատենի. ասէ զանձնէ թէ ծառայ է, եւ տայ զինքն 'ի ձեռս գնողին եւ լինի մատ-նող անձին իւրոյ. եթէ Ի ամաց իցէ, կորուս զանձնիշխանութիւնն իւր. եւ ոչ կարէ օգնել նմա օրէնքս. եւս առաւել թէ զգինս անձինն իւրոյ բաժանեսցէ ընդ նմա վաճառողն եւ կամ թէ զրամսն եկեր. եւ արբ. մնայ ծառայն առ գնողն։

ԼԳ. — Եթէ կին ոք անձնիշխան առէ 'ի վերայ անձին իւրոյ ծա-ռայ զոք, եւ տան զնա 'ի պտոյտս, ոչ աւգնէ իւրն նաւամոսն, այլ կորուս զանձնիշխանութիւնն իւր եւ մնայ ծառայ գնողին, կամաւոր է 'ի պտոյտս որդւոյ իւրոյ. իսկ եթէ պահպանէ զան զիւամն, աւգնէ նմա օրէնքս, եւ դառնայ յանձնիշխանութիւնն իւր։

ԼԴ. — Եթէ այր ոք կամ կին առնու ինչ գողացեալ 'ի պահեստի, զոր ծառայի գողացեալ է, հրամայէ օրէնքս չորեքկին հատուցանել յըն-չից տեառնն։

ԼԵ. — Եթէ ոք ծառայ առանձնայ պայմանաւ եւ յառաջ քան զլինելն Զ ամսոյն զոր եդ օրէնքս սահման եւ գտանի ախտ ինչ ցաւոց կամ այլա-հայրութիւն, հրամայէ օրէնքս զծառայն դարձուցանել յառաջին տէրն, եւ առնուլ զգինսն 'ի նմանէ. իսկ եթէ լինի Զ ամիսն եւ ոչ գտանի այլն 'ի ծառայն (,) յետ այնր ոչ (1) կարէ դարձուցանել։

ԼԶ. — Եթէ ոք վաճառէ ծառայ պայմանաւ 'ի վերայ ամենայն ա-րատո(յ), թէ այր է, թէ կին, եւ գտանի 'ի նմա արատ ոչ կարէ դար-ձուցանել յետոյ, զի պայմանաւ գնեաց (.) բայց թէ գտանի այլահարու-թիւն, դարձուցանէ զոր առաջին տէրն լեալ էր ցաւն, եւ դարձեալ յետոյ եղեւ, ապա թէ նոր եղեւ ցաւն, ոչ կարէ դարձուցանել. եւ թէ վաճա-ռողն վկայիւք ծախեաց անարատ, եւ յետոյ գտանի փախչող, կամ գող, կարող է դարձուցանել գնողն, եւ զինչ զոր գողացաւ վճարէ վաճա-ռողն ապա թէ 'ի գնելն յիշեցաւ լաւ եւ վատթար 'ի վաճառողէն, եւ նա յայս պայմանս գնեաց, ոչ կարէ գնողն յետոյ վասն արատոյ դար-ձուցանել եւ ոչ խնդրել ինչ։

ԼԷ. — Եթէ ծառայ ազատի եւ մնայ ընդ իշխանութեամբ տեառն իւրոյ անձնիշխան է. եւ առնու կին յաղախնեաց տեառն իւրոյ զկնի

---

(1) Ըստ Բերլինի ձեռագրին։ Մեր ձեռագիրն ունէր՝ ոչ։

ազատութեանն. եւ ծնանին 'ի նմանէ որդիք. ոչ ժառանգին զնա, որդիք աղախնոյն. այլ ժառանգ լինի նմա որ ազատեացն զնա։

ԼԸ. — Որ ոք ազատէ ծառայ պարտի տանել զազատութիւնն. եթէ 'ի քաղաք հանդիպի առաջի եպիսկոպոսի եւ Զ քահանայի. եթէ 'ի գեղ առաջի քորեպիսկոպոսի եւ երիցանց գեղջն. որպէս զի նոքա վկայեսցեն ձեռագրով յազատութեանն. եւ այսպէս ազատ լիցի ծառայն. անձնիշխան. իսկ եթէ այսպէս ոչ ազատի. չէ ճշմարիտ ազատութիւն այն. այլ դարձեալ յորժամ կամի տէրն 'ի հնազանդութիւն է ծառայութեան նորա. որպէս հրամայէ օրէնքս։

ԼԹ. — Հրամայեն օրէնքս եթէ ոք գնէ զեաւզ. կամ տուն. կամ դրախտ. կամ այլ ինչ. եւ ինչս այս գրաւական էր եդեալ առ այն որ վաճառեաց զնա. եւ ոչ 'ի պատճառէ իրաց արտմեցաւ 'ի գնողէն զնոյնն այլ ըստ կամաց իւրոց վաճառեաց վասն հեռանալոյ սեփհական պատգոդին յաշխարհէն. եւ միայ վաճառեալ անդատաւորնն. կամ տունն առ գընողն զատանն ամի. եւ թէ յետ Ժ ամին յայտնի առաջի տէրն. եւ չտանէ խոյս եւ խնդիր առ գնողն. ամ մի միայ հաստատուն նմին զոր գնեացն. զի ոչ արար զամն խնդիր. իսկ եթէ նա որ հեռացեալն էր. կամ վաճառական էր. կամ զինուոր. հրամայէ օրէնքս մինչ 'ի լնուլ Ի ամաց խնդիր առնել իւր ստացուածոյն. զոր գրաւական էր եդեալ. ապա թէ ընդ Ի ամն անցանի. այլ ոչ դառնայ 'ի նա աւրինօքս։

Խ. — Հարցումն. Հարցանեն զաւրէնս եթէ ոսոխք զան 'ի դատաստան չարձակել իրաւանց. որ պարտաւորի խնդրէ համբերութիւն. զինչ պարտ է առնել դատաւորին Պատասխանի. Եթէ խնդրէ համբերութիւն ամիսս Գ կամ Դ տացի նմա. եւ յետ այնր քարշէ զնա ոսոխն 'ի դատարանն. եւ եթէ խորամանկութեամբն իւրով դարձեալ խնդրէ համբերութիւն (.) տան նմա զամիսս Գ. իսկ եթէ երրորդ անգամ խնդրէ համբերութիւն. կամ խափանել զդատաստանն. բայց նմա տայ օրէնքս երեքս անգամ համբերութիւն Բ ամիս այլ եւ թէ յետ այնորիկ այլ խնդրէ կորոյս զդատաստանն իւր։

ԽԱ. — Իսկ յորժամ տան նմա համբերութիւն Դ ամիս. եւ հանդիպի 'ի նոցանէ յուլիս եւ հոկտեմբեր. չհամարին զԲ ամիսս զայսոսիկ 'ի համբերութիւն զի խափանեալ է. եւ ժամանակ համբերութեանն սահմանեցաւ Թ ամիս. որ բաւական է վասն հաշուոյն. որ կայ 'ի միջին. զոր խնդրեն 'ի դատաւորէն եւ կամ վասն վկայիցն որք լինին 'ի հեռաւոր երկիր. եւ թէ դատաւոր երկրին. կամ թագաւորն յաշխարհն էր Գ ամիս տան զհամբերութիւնն. եւ թէ յայլ իշխանութիւն է որով վճարի իրաւունք դատաստանի նոցին. Զ ամիս տան զհամբերութիւնն. եւ թէ այլ խնդրէ ժամանակ. դատաւոր իրաւանցն տեսցէ։

ԽԲ. — Կոստանդիանոս թագաւորն (,) յիշատակ նորա աւրհնութեամբ եղիցի. պատւեաց զառաքելական եկեղեցի. եւ 'ի նմա ժառան-

զաւառացն ըստ իւրաքանչիւր աստիճանի պարգեւեաց հօրն 'ի Թագաւորական յընչիցն յամենայն տեղիս. եւ նոյն ինքն եդ օրէնս. եւ առաքեաց զհրովարտակս, որք սպասաւորեն յեկեղեցիս յամենայն հարկաց եւ 'ի զինուորական պարտուցն փրկեաց, եւ ազատս արար ի մարմնաւոր յիշխանութեանց, եւ խափանեաց 'ի նոցանէ զլուծ հայրենի հարկաց եւ հնազանդութեանց։

ԽԳ. — Կոստանդիանոս Թագաւորն հրամայեաց պարգեւս եկեղեցեաց Քրիստոսի գեւղս եւ անդաստանս յամենայն տեղիս ուստի լինէր պէտք սպասաւորութեան տաճարաց Աստուծոյ. եւ յայսմանէ կերակրին եղբարք եւ քորք եւ այրիք, որք են ընդ հովանեաւ եկեղեցւոյ (,) որպէս զի համարակալ նոցին աղօթիւք անշարժ պահեսցէ Աստուած զԹագաւորութիւն երկրպագուացս ամենասուրբ երրորդութեանն։

ԽԴ. — Լեւոն Թագաւորն 'ի ժամանակս իւր պատուեաց զաւր կիրակէի յարութեանն Քրիստոսի, եւ եդ օրէնս զի 'ի նմա խափանեսցին արքունական հարկքն եւ դատաստանք. զի ամենեքեան պարապեալք աներկիւղ սրտիւ ժողովին յեկեղեցի Քրիստոսի, եւ մատուցանեն զաղօթս ընդունելիս առ Աստուած. եւ եդ օրէնս 'ի կիրակէի բնաւ ոչ ըմբռնել զոք եւ խնդրել պարտս, եւ ոչ առնուլ զվրէժ չար գործոց. այլ որպէս վերադոյն ասացաք յիւ[ր]աքանչիւր յաշխարհ խաղաղութեամբ ժողովել յեկեղեցի, եւ առնել աղօթս աներկիւղ 'ի դատաւորէ եւ 'ի պարտատիրէ եւ 'ի նոցին սպասաւորաց։

ԽԵ. — Հրամանաւ իւրով եդ օրէնս վասն պռուգաց Լեւոն Թագաւորն, եւ սահմանեաց այսպէս. զոր ինչ բերէ կին պռոյգս, գրեսցեն զայն նոյնպէս եւ զտըվարն, այսինքն զվարձանսն, որ է մահր, որպէս հասանի այրն 'ի պռոյգն. նոյնպէս եւ կինն 'ի վարձանսն, գրեն հաստատուն, թէ ոսկի (,) թէ արծաթ, թէ զգեստ, թէ ծառայս, թէ անասունս, եւ այլ զինչ եւ իցէ. զի յիւրաքանչիւր յաշխարհս ըստ սովորութեանն բերեն կանայք զպռոյգն եւ արքն տան զվարձանսն առաւել կամ պակաս. այլ 'ի Թագաւորի քաղաքն Կոստանդնուպաւլիս եւ յամենայն երկիրն արեւմտից, եթէ բերէ կինն Ծ դահեկան (1). իսկ յաշխարհն արեւելից ունի այլ սովորութիւն, զի բերեալ էինն Ծ դահեկան (1), կնոջըն տայ այրն Մ դահեկան (1)։

ԽԶ. — Արդ սահմանեաց նաեւս Թագաւորն Լեւոն, զի յետ աւրհնութեան պսակին եւ միաւորութեան առն եւ կնոջն, եթէ արձակէ այրն զկին իւր առանց իրիք պատճառի, տայ 'ի նա զամենայն պռոյգն զոր եբեր եւ զտըւարն որպէս գրեալն էր 'ի թղթին, եւ թէ կինն ելանէ յառնէն առանց պատճառի զոր իրաւացի դատի աւրէնքս, առանց պռո-

(1) Ձեռագիրն ունի՝ դկ։ Բեռլինի ձեռագիրն ալ « դահեկան » գրած է։

դրամ եւ տանից տուարի եղանէ. եւ այս միայն առ այրն օրինօք։

ԽԷ. — Իսկ եթէ մեռնի 'ի նոցանէ եղանէ սխալանօք, եւ բաժանի այրն 'ի կնոջէն եւ կինն յառնէն, օրինօք եկեղեցւոյն. յէ վերակացու եկեղեցւոյն թուղթ առ դատաւորն, եւ ցուցանէ զսխալանսն. եւ թէ այրն է սխալող զպռոյգն եւ զվարձանսն բաւանդակ դարձուցանէ ի կինն. իսկ եթէ կինն է սխալեալ, դարձուցանէ այրն զպռոյգն եւ զվար. Յանան արգելու վասն յանցանաց կնոջն։

ԽԸ. — Իսկ թէ սիրով են այրն եւ կինն առ միմեանս եւ մեռանի այրն եւ արձակի իւրեանց միաւորութիւնն եւ չունիցին որդիք (.) առնու կինն զպռոյգն իւր եւ զտուարի կէսն. եւ թէ ունի որդիք. չառնու ինչ այլ ընդ որդիսն է ժառանգակից։

ԽԹ. — Եթէ կինն մեռանի եւ ունի որդիս, արգելու այրն զպռոյգ-ըն եւ զտուարն անուամբ որդւոցն։

Ծ. — Եթէ մեռանի կինն եւ ոչ ունի որդիս, առնու այրն զկէս պռուգացն եւ զամէն վարձանսն, եւ զայլ կէսն տայ հօր կնոջն. եւ թէ չունի հայր գրէ տիաթիկ կինն, եւ ում կամի տայ. բայց այս է աւրէնք. կնոջն որ կացեալ է ընդ առնն ամլութեամբ զբազում ժամանակս։

ԾԱ. — Իսկ եթէ մեռանի կինն որոյ եղեն որդիք, եւ առաջի իւրն մեռան, եւ ինքն գտնի նոյա մեռանի, արգելու այրն զվարձանսն յանուն որդւոցն, որ ծնան նոցա, եւ մի մասն 'ի Զ մասնէ պռուգացն, եւ թէ կինն Դ ամ կացեալ էր ընդ առնն, արգելու զամենայն վարձանսն, եւ մի 'ի չորից պռուգացն; եւ թէ Ն ամ է կացեալ ընդ առնն, եւ մինչեւ ցՆ ամն չեղեն նմա որդիք, արգելու զվարձանսն, եւ զԴ-րդ մասն 'ի պռուգացն եւ զԳ մասն տանի հայր կնոջն, եւ թէ չէ հայրն կենդանի, առէ ցկինն. արա տիաթիկ եւ ում կամիս թող զմասն քո. ապա թէ կինն կացեալ է ընդ առն ԺԲ ամ, եւ յառաջագոյն քան զայրն մեռանի, արգելու այրն զվարձանսն եւ զկէս պռուգացն, եւ զմիւս կէսն տայ կնոջ հօրն թէ կենդանի է. եւ թէ չէ կենդանի, հրամայէ կնոջն 'ի կտակն իւր թողուլ, ում եւ կամի. եւ թէ մեռանի կինն եւ ոչ ունի որդիք եւ ոչ այր, եւ ոչ գրէ կտակ, զբաժինն իւր առնուն եղբարքն, կամ այլ մաւտաւոր ազգն, եւ յաւուր թաղման կնոջն, հրամայէ նոմոսս յերկոցունց կողմանցն ըստ իւրաքանչիւր զօրին հանել ծախս 'ի վերայ գերեզմանին, եւ սպասաւոր եկեղեցւոյն։

ԾԲ. — Աշխարհ որ ունի սովորութիւն, զի զպռոյգն եւ տուարն չգրեն ի թղթի, այլ միայն պարզաբար ամուսնանան եւ առնուն զպսակըն աւրհնութեան, ընդունի օրէնքս կայնպիսին, որպէս զայնոսիկ որ գրեն զպռոյգն, եւ որդիքն որ լինին, ժառանգեն զինչսն հօրն, եւ լինի այս ըստ նաւմաւսի եւ ըստ սովորութեան երկրի։

ԾԳ. — Թէոդոս թագաւորն (,) յիշատակ նորա աւրհնութեամբ (,) եդ օրէնս, թէ քրիստոնեայ որ պարտի ինչս ընկերի իւրում, եւ չխնդրե-

ցաւ 'ի նմանէ մինչեւ յէ ամս. յետ այսր չունի հրաման խնդրելոյ. կամ 'ի նմանէ կամ յիւրոց ազգականացն. այլ մի կերպիւ թէ այգի է. կամ արտ. կամ ծառատունկ. կամ նման սոցին. արդ եթէ ունէր զայսորիկ առ ինքն. եւ ոչ էր գրաւական. եւ ոչ ծախեաց այլում. եւ ոչ ետ պըտոյգս. եւ բնաւ այլ տէր ոչ փոխեցաւ 'ի վերայ ընչիցն. թէպէտեւ անց ընդ պայմանն Է ամացն (,) իշխանութիւն ունի տէրն զինչսն խնդրել. իսկ եթէ փոխեցաւ երքն առ այլ տէր (,) ոչ կարէ զինչսն խնդրել. զի յետ Է ամին խափանեալ է. ամենայն պատճառք. թէ հայրենիք թէ ստացուածք. թէ սահմանք անդաստանաց ջրարբիք թէ խողովակք ջուրց. որ մտանեն 'ի քաղաքս. եւ բաժանին 'ի յարկս իւրաքանչիւրս. թէ յառաջ քան զէ ամս չեղեւ խնդիր այսպիսեացս յիտոյ այլ ոչ կարէ խնդրել. որպէս հրամայէ օրէնքս. ապա թէ խնդրեաց եւ հարստահարեցաւ յունողէն. երբ եւ կարէ գտանել աւգնականութիւն խնդրէ եւ առնու. եւ թըւին ժամանակք ամացն ըստ խնդրողին եւ ոչ ըստ ունելոյն.

ՄԴ. — Հրամայէ օրէնքս ոչ ունել 'ի կնութիւն զկին եղբօրն. եւ այրի կնոջն չէ մարթ լինել կին եղբօր առնն իւրոյ. եւ առն որոյ կինն մեռանի չէ պարտ առնուլ զքոյր կնոջն. այսինքն զերկու քորսն (.) եւ զայս սահմանէ օրէնքս. որպէս զի խափանեսցի չար պատահմունքս. որ հանդիպի բազմաց 'ի մարդկանէ. որք խայտառակին ցանկութեամբ (.) այսինքն թէ սիրէ այր զկին եղբօրն. եղեն Բ հակառակք միմեանց. եւ սպանանեն զայր կնոջն մահադեղօք. սիրեաց կին զեղբայր առնն եւ յուսով ամուսնութեանն քննեայ եւ սպանանէ զայր իւր. սիրէ այր զքոյր կնոջն եւ սպանանէ զկին ուպէս կամի. վասն այսպիսի չար եւ ամբարիշտ գործոյ խափանեաց օրէնքս զամուսնութիւնն զայս. եւ թէ ոք յանդգնի եւ առնէ զայսպիսի ինչ մերձաւորութիւնս առանց հրամանի թագաւորաց (,) որդիքն որ ծնանին, ոչ ժառանգեն զնոսա, եւ ոչ այլ ոք յազգականութենէն, որք կամակիցք էին չար զուգաւորութեանն այնմիկ. իսկ որք կամեսցին առնել զայս, պարտին աղաչանս մատուցանել թագաւորին, եւ հրամանաւ նորին առնուլ զկին եղբօրն, կամ զքոյր կնոջն, եւ գրով հրամանի թագաւորին ժառանգեն զստացուածս իւր որդիքն իւր.

ՄԵ. — Արգելու օրէնքս եւ զդուստր եղբօրն առնուլ 'ի կնութիւն, եւ զքոյր մօրն եւ զկին (1) հօրն եւ զաղախին հօրն. եւ որ ոք յանդգնի առնել, ոչ ժառանգեն զնա ոչ ուստերքն եւ ոչ դստերքն, եւ ոչ ազգականքն, որք միաբանեցան ընդ նոսա. եւ թէ չ[գ]տանի ոք յազգականացն. օտար յայնմ խորհրդոյն, ժառանգէ զնա տուն գանձուց թագաւորին.

(1) Այսպէս. Թերեւս Հ օ ր ն քեռն ուզէ. Բերլինի ձեռագիրն ալ այսպէս ունի

ՄԶ. — Այր ոք որ առնու կին աւրինաւոր պսակաւ եւ ծնանի որդիք. եւ զկնի առն մեռանի կինն, եւ նա առնու այլ կին, կամ զքոյր կնոջն, կամ զկին եղբօրն իւրոյ, կամ զկին հօրաքրոջ, կամ զհաւր աղախինն. կամ զկին հօր իւրոյ՝ եւ ծնանին որդիք յայսպիսի ամուսնութենէ, հրամանս տայ օրէնքս, ոչ ժառանգել որդոցն անօրէնութեան ընդ յորդոցն որ ծնան յառաջին կնոջմէն, զի իրաւացի որդոցն անկարէ զհայրն չբջել յանօրէն գործոյն։

ՄԷ. — Եւթէ իցէ որ հանդերձի յամուսնութիւն եւ ի ձեռն տայն, տան, կնոջն խաչ եւ մատնի, կամ այլ ինչ, եւ չժամանէ խօսեալ այրն մեռանի 'ի ուսալն, թէ ընտանիք առնն խնդրեն զինչսն 'ի կնոջէն, կամ յազգականացն, հրամայէ օրէնքս թէ տեսաւ զկինն կամ համբուրեաց, առնուլ զկէսն 'ի յիրացն, եւ զկէսն դարձուցանէլ յընտանիսն 'ի մայրն կամ յեղբայրսն, կամ յայլ մերձաւոր ազգականսն. եւ թէ չունի մայր, կամ եղբայր, հրաման տայ օրէնքս զի ամենայնն խօսեալ կնոջն մնասցէ, զոր ինչ ունէին յինքն. ապա թէ խօսեալ այրն ոչ եսես զկինն, այլ միջնորդութեամբ բարեկամացն ուղղեցաւ բանն, դարձուցանէ կինն զոր ինչ ընկալեալ կամ յայրն տայ, կամ յազգականսն. Իսկ թէ կինն մեռանի (,) առնու այրն, կամ իւր ազգականքն զամենայն տուեալն, եւ զմաչեալ եւ զհապեալ ուտեստ. ոչ դարձուցանէ եւ ոչ զծախս կերակրոյն։

ՄԸ. — Այր ոք եթէ առնուլ կամի կին եւ ձեռն տայ եղբարց կնոջն եւ ազգականացն, եւ տայ տուրս հարսինն մատանի կամ ոսկի, կամ դահեկանք. թէ յետ այնր չբջէ զկամսն յառնելոյ զխօսեալ կինն, կորուսանէ զոր ինչ ետն. իսկ թէ ազգ կնոջն խափանել կամին զպսակն (,) աւրէնութեամբ զառուրսն զոր 'ի ձեռն տալոյն աւրն առին. կրկին դարձուսցանեն. իսկ թէ այլ ինչ յետ այնր աւուր առին, ոչ կարեն այլ զնոյն դարձուցանել։

ՄԹ. — Որ ոք հանդերձեալ է ամուսնացուցանել զդուստր իւր եւ տայ պտոյգս տամ համարով դահեկանս. եւ ի վճարելն ոչ ունի զբաւականն, տայ ձեռնագիր այնմ, զոր ոչ կարաց վճարել, եւ ցուցանէ օր եւ ժամ վճարելոյ, եւ երբ վճարէ (,) առնու զկին 'ի փեսայէն, որ լիապէս ունենայ զչափ տրոցն. ապա թէ յամէ փեսայն, 'ի խնդրել զպտուղայն թերին, յետ է տարոյն այլ ոչ վճարի (1)։

Կ (ԾԹ). — Աղջիկ որ որբ է 'ի հօրէ եւ ունի մայր եւ եղբայր, նոցա բանիւ եւ կամօք կարող է առնուլ այր, եւ զոր ուզէ առնու, բայց իւր հոգեբարձուին հրամանաւ, ապա թէ աղջիկն կին է կատարեալ, ունի

(1) Այս ՆԹ յօդուածն ամբողջութեամբ կը պակսի Բեռլինի ձեռագրին մէջ. որով յօդուածոյ համարները իրարու համընթաց չեն երթար այլ եւս

իշխանութիւն յօրինացս առանց ազգականացն կամաց եւ առանց հոգ-բարձուին առնուլ այր զոր խնդրէ։

ԿԱ (կ). — Կին առն յորոյ անուն գնէ այրն գեղ, եթէ այլ ինչ, թէ տայ հրաման այրն, ապա թէ սեփհական է այրն զստացուածն իւր որ յիւր անունն գրեցաւ, որպէս զիւր։

ԿԲ (կա). — Հարցանեն զօրէնս, թէ գնէ մարդ գեաւղ, կամ զար-դարանք յանուն կնոջն, զոր չառ 'ի կուսութենէ, է կնոջն թէ ոչ. ոչ է. Ճշմարիտ թէ յիւր ստացուածոյն գնեաց զայն այրն, եթէ 'ի ժառան-գութիւն կնոջն տուեալ յիւր յընդանեացն կամ է 'ի պառուգայ կամ յըն-ծիցս, զոր տուեալ ընդանիք կնոջն, գինք արեանցն իւր սեփհական. եւ միայն նմին առանց հակառակութեան։

ԿԳ (կբ). — Եթէ ոք յափշտակէ զկոյս որ ոչ ունի այր, մահապարտ է, թէ եւ ոչ կամեցաւ առ նա վասն յափշտակութեանն, որպէս չնացող զնա տանջիցէք։

ԿԴ (կգ). — Եթէ կարողութիւն է կնոջն յաւելեալ առնել 'ի վե-րայ իւր պառուգայն. 'ի տուն առնն թէ ոչ. թէ իւր ազգականքն գեաւղ կամ այլ ինչ, յայնմանէ իւր յաւելեալ առնէ 'ի տանէ. եւ բերէ առաջի առնն, եւ նա տալեալ գնէ 'ի վերայ պառուգայն. իսկ թէ ոչխար է, կամ ցորեն, կամ այլ ինչ որ վատնի, առնու թուղթ յառնէն յիշատակ այնմ իրացն։

ԿԵ (կդ). — Այրն եւ կինն յետ մերձաւորութեանն, որչափ են 'ի միասին, եւ ունին զամուսնութիւն, ոչ կարեն միմեանց տալ առանձին ինչ. զի յորժամ կամին չփոթեն զտուրսն, իսկ 'ի մահուն կտակն զոր թողուն իրաց հաստատուն է։

ԿԶ (կե). — Եթէ կարելի է առն որչափ ունի մերձաւորութիւն առ կինն բամբասել զնա 'ի շնութիւն, կամ յայլ ինչ յանցանս, թէ ցու-ցանէ հաստատուն կարող է եւ թէ վասն յանցանացն արձակէ զկինն, եւ տայ թուղթ արձակման, միան զերկուս ամիսս, թէ վերստին կանկնէ եւ հաստատէ զբանն առնու զպռոյգն 'ի կնոջէն, եւ լինի նոցա կատարեալ բաժանումն։

ԿԷ (կզ). — Զի՞նչ է որ զկինն անարգել տայ յետ վաղճանի առնն, թէ լրբի եւ առնու այր յառաջ քան զլնուլ Ժ ամսոյ իւրոյ այրութեանն. թէ համարձակլի յառաջ քան զայս (՝) չնացող է, եւ առնու օրէնքս զոր տային 'ի նա. եւ թէ այրն գրեաց իւր բաժին, օրէնքս առնու զայն 'ի նմանէ. զի չհամբերեաց տասն ամիսս։

ԿԸ (կէ). — Հարցանեն զօրէնս թէ զի՞նչ հարկ է տալ որդոցն մաւ-րըն բաժին 'ի հայրենեացն, յորժամ իւրեանց հայրն մեռանի. կինն որ յանձնիշխանութենէ է ծնեալ, մինչեւ յորդոցն որպէս դառնայ առ նա է ժառանգութիւն յորդոյն եւ կնոջ, որ 'ի ստրկութենէ մինչեւ 'ի չորրորդ թոռունսն տան նմին ժառանգել զստացուածնն որդոյն։

ՀԹ (կը). — Յորմէ պատուոյ զրկին մարդիկ որք լինին յօրինացն [illegible]. այնպիսիքն ոչ լինին պատգամաւորք եւ ոչ հարստատանք կամ վկայք 'ի դատաստանս, ոչ քահանայք եւ ոչ ատենաւորք թագաւորի. եւ ոչ աթոռակիցսն, ոչ լինին դատաւորք 'ի քաղաքի. եւ ոչ վերակացուք յաշխարհացն. եւ ոչ հոգացողք թագաւորական ստացուածոցն. այլ յամենայն թագաւորական պատուոյ զրկած են.

Հ (կթ). — Կին յորժամ կենդանի է հայրն նորա կամ հօրն հայրն, ոչ ունի իշխանութիւն կտակել պաուգաց իւրոց ժառանգ եւ ցուցիչ, ապա թէ մեռանիցին. եւ զերծի 'ի նոցին իշխանութենէն զրէ զպաուգայն ում եւ կամի 'ի կտակին. այսպէս եւ այր մարդ, որչափ հայր իւր կենդանի է, կամ հօրն հայրն, ոչ կարէ գրել կտակ.

ՀԱ (հ). — Հարցումն. Յորժամ կարող է կինն առնուլ իշխանութիւն 'ի վերայ պաուգաց իւրոց. Պատասխանի. Թէ մեռանի հայրն իւր եւ յետ հօրն մեռանի այրն, ապա կարող է ունել իշխանութիւն պաուգացն.

ՀԲ (հա). — Ոչ տայ օրէնքս հրաման կնոջն զայր իւր բամբասել եւ ասել յաւանի թէ զայս ինչ եւ զայն գործեցեր. նա եւ ոչ եղբարցն տայ հրաման զեղբարսն բամբասել վասն չար գործոց. եւ ոչ ծառայիցն տայ հրաման զտէրսն բամբասել, կամ մատնել բայց թէ ցուցանեն թէ զօրագնալ է զթագաւորական ծիրանիսն, կամ ունի առ ինքն քարինս պատուականս թագուցեալս որ միայն թագաւորին վայել է.

ՀԳ (հբ). — Թէ կինն մեռանի առաջի առնն եւ որդոցն, այրն է տէր պաուգացն. առաջին օրէնքն զոր հրամայեաց Լեւոն, բայց եթէ հայր կնոջն կենդանի է (,) առնու զկէս պաուգայն, եւ այրն իւր զկէսըն. եւ թէ մեռեալ է հայր կնոջն, ժառանգէ այրն զամենայն պարգեւն յանուն որդոցն, որք կենդանիք են. Իսկ եթէ ոչ գոն որդիք 'ի միջի (,) իշխանութիւն ունի կինն առնել կտակ եւ զկէս պաուգայն տալ ում եւ կամի.

ՀԴ (հգ). — Հարցումն. Եթէ լինի առն Բ կին, եւ առաջինն էր առանց պաուգաց, եւ ծնաւ միևնն որդիս, եւ էառ կին մի այլ օրինօք (,) ծնեալ 'ի նմանէ որդիք հաւասար ժառանգեն որդիքն թէ ոչ. Պատասխանի. Ունի իշխանութիւն հայրն հաւասար տալ ամենեցուն, եւ անուանէ զորդիսն անպաուգ կնոջն աւատար ժառանգիչս, զորս ըստ իւր կամացն արար ժառանգիչս յորդոցն ապա թէ ոչ առնէ վասն իւր կտակ, ժառանգեն զնա որդիք ծնեալքն 'ի կնոջէն որ եբեր զպաուգսն.

ՀԵ (հդ). — Կին որ ամուսնանայ առն ծառայի եւ բնակէ ի տուն նորա, աղախին լինի ինքն եւ որ ծնանի 'ի նմանէ 'ի տուն տեառն. բայց եթէ ոչ կամի գրել զանձն իւր ծառայութեան, ելանէ ինքն եւ որդիքն միան 'ի ծառայութիւն.

ՀԶ (Ղե) — Եթէ ծառայ սիրէ զկին որ աղախին է եւ ընդունի զկինն յարկս տեառն իւրոյ, առաջէ տէր ծառային 'ի կինն Գ անկամ, թէ մի բնակիլ ընդ ծառայդ. եւ թէ յետ Գ անկոյն ընդունի կինն զծառայն, իշխանութիւն ունի տէրն յօրինացս քարշել զկինն յաղախնութիւն իւր.

ՀԷ (Ղզ). — Հարցանեն զօրէնս եթէ է կարելի գրել ժառանգութիւն կնոջ որ ոչ ունի որդիս թէ ունի որդիս գրէ 'ի կտակն ժառանգել ընդ նոսա, ապա թէ ոչ թողու նորին բաժին զկնի պռուպացն, եւ որպէս կամի այրն ունի իշխանութիւն կանգնել զիւր ժառանգիչսն.

ՀԸ (Ղէ). — Աւրէնքս ոչ տայ հրաման կնոջ լինել երաշխաւոր. եւ ոչ 'ի մի ինչ յիրս.

ՀԹ (Ղը). — Հրաման տայ օրէնքս կնոջ զի թէ կամին տան հրաման հարց իւրեանց խնդրել զիւրեանց ստացուածսն, թէ ոչ ունին այր. եւ թէ ոչ այլ մարդկան զօրս կամին տան զայս իշխանութիւնս վերակացու լինել իւրեանց իրաւանցն.

Ձ (Ղթ). — Եթէ գրէ կին որ կտակ, եւ թողու ժառանգութիւն թոռանցն. չունի իշխանութիւն կացուցանել նոյին հրամայող եւ տեսուչ. զի հայրն ունի իշխանութիւն կարգաւորել զնոսին, ապա թէ այրքն կայցեն հրամայող եւ տեսուչ զոր թողու.

ՁԱ (Ճ). — Եթէ առնու այր ոք կին եւ բերէ զկնի իւր պռոյգ. ծառայք, ոչխարք, երամակք, լուծք եզանց, եւ այլ ինչ եւ իցէ առուրք եւ ստացուածք, եւ յետ այնորիկ ծնանին աղախինքն որդիս, եւ հաւուք եւ խաշինք բազմանան եւ կամ այլ ինչքն, եթէ լինի բաժանումն ընդ այրն եւ ընդ կինն, զայսպիսեացս յամենեցունց առնու զկէս ծննդոցն. եւ զհամարն զոր եբեր եւ առնն միայ կէս ծննդեանն վասն զարմանելոյն.

ՁԲ (Ճա) — Թէ առնու այր ոք կին եւ գտանի զիւահար, եւ կամի զնա արձակել վասն այսր (,) քննեսցի, թէ դեւն յառաջ էր 'ի կինն քան զպսակն, թէ յետոյ եմուտ. թէ յետ պսակին մտեալ է, պարտական է զամենայն պռոյգն եւ զմահրն զոր գրեաց կնոջն տալ 'ի նմա. ապա թէ յառաջ քան զպսակն կայր 'ի նմա դեւն, եւ ոչ գիտաց այրն նորա (,) 'ի յարձակելն տայ զիւր պռոյգն 'ի լման. բայց զմահրն ոչ պարտի տալ.

ՁԳ (Ճբ). — Եթէ առնու այր ոք կին եւ գտանի իւր նեղութիւն մարմնոյ յետոյ քան զպսակն, եւ ցաւն անպարտս առնէ զնա առ ամուսնութիւն եւ բաժանումն լինի 'ի մէջ նոցա, պարտի տալ կնոջն զպռոյգ-սըն եւ զվարձանսն որ է մահրն, ապա թէ վասն առաջին սիրոյն որ է 'ի մէջն, ոչ կամի զարձակելն, դնէ զնա յայլ տուն, եւ կերակրէ ըստ բաւականին զկինն որ վշտացաւ 'ի յակամայ ցաւոցն.

ՁԴ (Ճգ). — Հարցանեն զաւ[րէնս] թէ է կարող կինն որ ունի այր, եւ ծնաւ 'ի նմանէ որդիս, եւ պատճառաւ իւիք բաժանի պռուգօք կամ առանց պռուգաց եւ յորդոցն առնու զկնի իւր. հրաման տայ օրէնքս,

թէ յայնժամ առնու, երբ խոստովանի, թ'է այս որդիս 'ի շնութենէ է, քանզի օրինօք ծնեալ որդիքն ընդ հաւրն հրամանաւ են։

ՁԵ (ձդ). — Հարցումն. Թէ է անօրէնութիւն (1) կնոջ ինքնիշխանութեամբ ելանել յառնէն։ Պատասխանի. Թէ յափշտակեաց զայս կինս առանց իւր ընդանեացն, եւ ոչ ետուն պտուղք. կարող է հայրն զդստերըն բերոյ անարգանս յորժամ եւ ինքն կամեսցի. եւ ելանէ յառնէն բռնութեամբ։

ՁԶ (ձե). — Հարցումն. Եթէ լինի բաժանումն առն եւ կնոջ. կամ մահուամբ. կամ այլ պատճառաւ որ կայ ճանապարհէ կնոջն առնուլ զիւր պտուղսն։ Պատասխանի. Այսպէս պարտ է առնել, թէ ունի զգեստ անմաշ առնու զնոյնն. իսկ թէ մաշեաց զա[ր]մէքն. մինչ նոր էր ըստ որում առեն վաճառականքն. եւ թէ ոսկի բերեալ են. կամ զահեկան. կամ հող. առնու զնոյնն. ապա թէ բերեալ է հաւտս, կամ կով. կամ եզինս, կամ ուղտք եւ վաճառեցաւ (,) առնու զգինն. եւ թէ կենդանի կան (,) առնու համարովն, զոր եբեր եւ զկէս ծննդոցն թողու առնն վասն դարմանելոյն. եւ զորեարն հետ պտուղացն առնու. եւ յանասնոցն, թէ մեռեալ են. չկայ պարտք վճարել առնն. Նոյնպէս թէ 'ի ծառայից են մեռեալ. այլ զոր կանն առնու. եւ թէ վաճառեցաւ զգինան առնու. եւ թէ զաւակք են աճեալք. կէսն կնոջն եւ կէսն առնն։

ՁԷ (ձզ). — Հարցումն. Թէ կարելի է առնն արձակել զկինն իւր. եւ զրկել 'ի պտուղացն. յորժամ ոչ ունի օրինաւոր պատճառ 'ի վերայ նորա։ Պատասխանի. Ոչ կարէ առնել զայս. բայց թէ օրինաւոր պատճառ ցուցանէ. թէ շնացաւ կինն, կամ աւթեցաւ 'ի տուն որ ոչ է յիւրոց առանց առն հրամանի. կամ գնաց յանվայելուչ խաղս. եւ որ ինչ նման է սոցին. երբ սոքա յայտնեցանէ 'ի վերայ կնոջն. արձակէ զկինն առանց պտուղայն. ապա թէ այլ պատճառաւ կամի արձակել զկինն, եւ յայսպիսի չարեացս չստուգէ 'ի վերայ նորա, ոչ կարէ առնուլ զպտուղսն եւ ոչ բնաւ ունի հրաման պակասեցուցանել իրս։

ՁԸ (ձէ). — Հարցումն. Է կարողութիւն կնոջ տալ թուղթ արձակման 'ի սկէսուրն կամ յայրն. եւ առնուլ զպտուղսն, առանց ցուցանելոյ յառնէն զխալանք։ Պատասխանի. Ոչ է կարողութիւն կնոջ տալ թուղթ արձակման. կամ առնել զայս վայրապար բայց թէ հաւանեցուցանէ 'ի պատճառն զայրն եւ զսկեսուրն թէ կայ վկայութիւն երկուց կամ երից. թէ ծեծեաց այրն զկինն առանց օրինաց. եւ առանց պատճառի. կամ գործեաց առ ինքն գործ, որոց իրաւացի է բաժանելն, որ է այս. կախարդութիւն, շնութիւն, գողութիւն. կամ եած 'ի տուն իւր բոզ. կամ մանուկ, կամ գործեաց պղծութիւն ընդ նմա կամ հետ նորին ըն-

---

(1) Ըստ Բեռլինի ձեռագրին՝ կարողութիւն։

դանեսցեն. եւ ոչ միայն այս, այլ թէ եհար բրով, կամ խարազանաւ, որպէս ծառայ, կամ սուր ինչ քարշեաց 'ի վերայ նորա. ըստ այսպիսի պատճառացս սաստկեան նեղէ օրէնքս թուղթ տալ արձակման, եւ տանու զպտուղն առանց հակառակութեան. բայց առ իւր ակէարայրն չունի կինն բաժին խնդրել. իսկ թէ ընդ նմին հրամանաւ է պտուղն, կամ իւր ձեռն 'ի մէջ չէր, թէ այպէս էր իրաւունքս 'ի նմանէ խնդրէ զպտոյգն.

ՁԹ (Ճը). — Մարդ եթէ մեռանի առանց կտակագրի· ժառանգեն զհայրենիսն զաւակքն հետ եղբարցն. եւ թէ մայրն կինի հօրն մեռանի առանց կտակագրի զնա զաւակքն հաւասար եղբարցն ժառանգեն. ապա թէ մինչ հայրն կենդանի էր, եւ պտուղօք եհան զնոսա 'ի տանէն, բերեն զպտուղն առ եղբարսն եւ դնեն 'ի մէջ, եւ լինի բաժանումն հաւասար 'ի վերայ նոցա. Իսկ եթէ հետ հօրն մահուն կենդանի էր մայրն, եւ մեռանի յորդոց իւրոց. եւ չառնէ կտակագիր, եւ չունի որդիք (,) ժառանգեն քուերքն զնա հետ մօրն, եւ այլ եղբարցն, եւ մայրըն լինի ժառանգակից հաւասար որդոցն եւ դստերացն.

Ղ (Ճթ). — Հայրն եթէ մեռանի առանց կտակի եւ թողու միածին որդի, կամ դուստր, եւ հանդիպի մեռանել եւ նմա, եւ մայրն միայն է կենդանի. թէ ունի աղայ որ մեռաւ, հօրեղբայր, կամ հօրեղբօր որդի ժառանգէ հօրեղբայրն, կամ նորին որդին յիրար բաժանեն յիւրից մասանց զմինն. եւ զերկու մասն ժառանգէ իւր մայրն. զի կանանց ազգի ժառանգութիւնն յառաջին աստիճանն խափանէ, չժառանգեն հետ հայրենի ազգին զքուեր որդիքն, եւ ոչ նոցին որդիքն. Իսկ եթէ վճարեցաւ ազգն հայրենի ապա մտանէ մայրենի ազգն 'ի ժառանգութիւնն. եւ հրամայէ օրէնքս այսպէս քննել զմերձաւորն թէ որ է, եւ նմին տալ զժառանգութիւնն.

ՂԱ. (ղ). — Այր ոք առ կին եւ մեռաւ, եւ ոչ եթող որդիք. առնու կինն զպտուղն եւ զկէս մահրին, եւ թէ կայցեալ է ընդ առն բազում տարիք. եւ մաշեալ է իւր օգեատն որ է պտոյգն, առնու գին զինչ արժէր (1) նորին. եւ թէ 'ի գեղջէ եւ թէ 'ի քաղաքէ գիտելի է գինն, եւ թէ ոսկի է, թէ արծաթ, եւ թէ անդաստան, գինն յայտնի է. Իսկ թէ ծառայք, թէ աղախինք, զորս կենդանի է (,) առնու, եւ որք մեռանին իբրեւ զմահկանացուս, վըզենն կնոջն է, եւ թէ թողեալ են որդիք զկէսն առնու կինն, եւ զկէսն ժառանգաւորք առնն, այսպէս թէ ոչխար եբեր, կամ խաշինք (,) ձի եւ ուղտ. զորս կենդանի է առնու, եւ զկէս ծնընդոցն, եւ մեռածն ոչ յիշելի. նոյնպէս եւ մեղուքն.

---

(1) Ձեռագիրն ունի՝ աժ էր. Բեռլինի ձեռագիրն՝ ածէր.

ՂԲ (ղա). — Հրամայէ օրէնքս, զի որք գործակալք են համայնոցին զԹագաւորական ապաստանութիւնն առնուն յարքունիսն, ոչ լինել 'ի նոցանէ հոգեբարձու 'ի վերայ ընչից որբոց. եւ ոչ մտանել 'ի դատաստան, եւ առնել վասն այլոց բանի, այլ վասն իւրեանց անձանցն կարող են առնել մինչեւ զերծանելն յարքունական հոգոցն.

ՂԳ (ղբ). — Եթէ զատեալ է մարդ (1) զորդի իւր կամ զդուստր առաջի դատաւորի եւ առնէ զնա ինքնիշխան, արտաքոյ իւր հնազանդութեանն, եւ լինի նմա զկնի ազատութեանն որդիք, ոչ ունի իշխանութիւն զԹոռունսն 'ի հնազանդութենէ պապուն ազատել.

ՂԴ (ղգ). — Հայր եթէ ազատէ զորդի իւր որ է մանուկ, հրաման տայ նմա արձակմանն, զի իւր հայրն ունի նմին իշխանութիւն.

ՂԵ (ղդ). — Հնազանդեցուցանէ օրէնքս զորդիս որդոյն պապուն. իսկ որդիք դստերացն ոչ պարտին զայս հնազանդութիւն, զի 'ի վերայ զաւակին ունի իշխանութիւն, իսկ 'ի վերայ նորին որդոցն ոչ.

ՂԶ (ղե). — Եթէ այր ոք առնէ նախագիծ կտակի եւ ոչ գրէ նոյնին հաստատութեամբ, եւ կայ (2) ի սիրան առնել այլ հրամակ, ոչ է ընդունելի գիրն. իսկ եթէ մեռանի, եւ ոչ գրեաց զնոյնն հաստատութեամբ Գ վկայիւքն որք լինին զկնի նամիկոսին, որ գրեացն զԹուղթն, վասն եւ վկային առաջի դատաւորին եւ երդնուն, զի 'ի բերանոյ նորին լուան, զոր ինչ գրեալն է 'ի կտակին, եւ որ ինչ 'ի նմա է, չէ խափանած, եւ հաստատէ զնոյնն դատաւոր քաղաքին, եւ գրէ 'ի նոյնն զիւր նշանագիրն, զկնի այնր լինի ճշմարիտ կտակն, որպէս եւ այն զի առնէ մարդ 'ի ժամ վաղճանին հաստատուն.

ՂԷ (ղզ). — Եթէ կացի այր ընդ ընկեր իւր 'ի վերայ ընչից, եւ գրէ Թուղթ պայմանի եւ երդնուն, երկու կողման երդուեալ վկայիւք որ գտանիւ 'ի դաշանցն, տայ եղբօրն իւրում զպայմանն, զոր գրեալ է, եւ վճռի որպէս հրամայէ օրէնքս վճռելի.

ՂԸ (ղէ). — Եթէ կամի մարդ վաճառել ինչս եւ առնու 'ի գնողէն ռփիմոն (,) թէ դարձուցանէ զվաճառն, հրամայէ օրէնքս կրկին տալ զռփիմոնն 'ի գնողն. իսկ թէ գնաւղն որ էրետ զռփիմոնն չկամենայ գնել, կորուսանէ միայն զռփիմոնն, որ ետ եւ մնայ այն, առ վաճառողն.

ՂԹ (ղը). — Հարցումն. է կարելի մարդոյն առնուլ իւր զոր կամի որդի յայնպիսեացն որ ազատութեամբ են ծնեալ. Պատասխանի. Ոչ է ճշմարիտ, թէ ոչ առնու գրով առաջի դատաւորաց. քանզի պարտ է առնել հաճեցուցանել զընկեր իւր առ 'ի տալ զմինն յորդոց նորա, իւր յորդեգիրս, եւ հարկ է առաջի դատաւորին տալ զորդեգիրն գրով, եւ

(1) Ըստ Բերլինի ձեռագրին՝ եթէ ազատէ մարդ.

(2) Այսպէս. իսկ ըստ Բերլինի ձեռագրին՝ կայր.

նորին զխստութեամբն· յետ այսր առնու զնա ընդ ձեռամբ իւրով, որպէս զօրինաւոր որդի. եւ մանուկն հնազանդի նմին. իբրեւ հօր—իսկ եթէ գրեն յիշատակութիւն որդեգրութեանն յերկուց կողմանցն, եւ ոչ է առաջի թագաւորի, կամ դատաւորի· չէ ճշմարիտ գիրն որ վասն այսր գրեցաւ։

Ճ (ղթ). — Թէ թողու մարդ կտակաւ ումեք ժառանգութիւն որ ոչ է յիւր ազգէ, եւ է նա այր կատարեալ, յիւր ձեռն մնայ ժառանգութիւնն եւ ոչ 'ի հօրն իւր ծնողի. բայց թէ մանուկ է ժամանակաւ (,) առնու հայրն զժառանգութիւնն եւ պահէ մինչեւ լինի այր կատարեալ. ապա թէ այր կատարեալ է (,) իշխանութիւն է նմա առնուլ զժառանգութիւնն. եթէ բռնադատէ զնա հայրն, կամ աւագ պայոյն առնուլ, ցուցանէ դատաւորին եւ առնու իշխանութիւն ժառանգութեանն յիւր պէտսըն ծախել լիցի եւ այդ։

ՃԱ (ճ). — Հոգեբարձուք յոր հաւատացին զոր տան զինչս նոցա. երբ վճարէ զիւր հրամայեալն. այլ ոչ ունի իշխանութիւն 'ի վերայ նոցա։

ՃԲ (ճա). — Արդ որ առնու որդեգիր առաջի դատաւորին. եթէ կամեսցի յետոյ արտաքս հանել, ոչ տայ թոյլ օրէնքս. եւ ոչ զընտութեամբ որդին. տայ նմին օրէնքս հալածել դատարկ. ապա թէ կամի հանել զնոսա յիւր իշխանութենէն եւ 'ի հնազանդութենէն, առաջի դատաւորին լիցի։

ՃԳ (ճբ). — Հայր փոխանակ որդոյն վճարէ ինչ թէ իւր հօրն հրամանաւ արար զպարտն, եւ ոչ փոխանակ աներոջն. կալցեն զփեսայն եւ ոչ փոխանակ եղբօր զեղբայր. բայց թէ երաշխաւոր լինիցի հոգեբարձու որբոցն կարող է աղաչել, եւ խնդրել զստացուած որբոյն յորոց պարտին եւ դատաւորն տայ նմա հրաման, խնդրել թախանձանօք եւ իրաւամբք։

ՃԴ (ճգ). — Ոչ տայ հրաման օրէնքս ումեք սպանանել զգողն, այլ կացուցանեն զնա առ դատաւորն. եւ նոքա ըստ արժանոյն դատեն։

ՃԵ (ճդ). Եթէ մարդ առնէ կռիւ, եւ զարան գործեալ առնէ սպանումն, եւ ունի սպանեալն հայր կամ մայր, կամ եղբայր, կամ այլ մերձաւորք, խնդրել զարիւնն ոչ ունին իշխանութիւն ձեռամբ իւրեանց սպանանել. այլ տան 'ի դատաւորսն, որք ունին իշխանութիւն խնդրել զվրէժն։

ՃԶ (ճե). — Մարդ եթէ զրկէ զընկերն, հրամայէ օրէնքս դարձուցանել զայնչափն 'ի նա որչափ զրկեաց։

ՃԷ (ճզ). — Եթէ ոք ասէ վասն մարդոյ թէ սպանանող է. եւ ոչ ցուցանէ առաջի դատաւորաց, սպանանի ինքն եւ զոր ինչ ասէ ոք 'ի վերայ ընկերի իւրոյ անօրէնութեամբ բան, եւ ոչ կարէ կացուցանել որպէս կամի դատաւորին պատուհասէ զասողն։

ՃԸ (ճէ). — Եթէ գնէ մարդ գեօղ կամ ծառայ, կամ այլ ինչ յանուն այլում. եւ իւր էր գինն որ ետ յանուն օտարին. եթէ գլխաւոր տէրն առնու. չկայ վասն այնր թերութիւն. առ այն յորոյ անուն գրեաց. քանզի իւր էր գինն, եւ ունի 'ի վերայ նորա իշխանութիւն. իսկ թագաւորական դիմոսն զիւր հարկսն պահանջէ.

ՃԹ (ճը). — Հրաման տայ օրէնքս առն յորոյ հաւատացին զվերակացութիւն քաղաքին. ոչինչ անցանել որք 'ի հնազանդութեան են, գնել իւր առանձին ոչ 'ի տանցն, ոչ դրախտ, ոչ հող. ոչ այլ ստացուած. Նոյնպէս հրաման տայ օրէնքս այնմ որ 'ի փոխ տայ, եւ գրաւական առնու, ոչ գնել զպարտականին զտուն, կամ զայլ ինչ մինչեւ զպարտսն վճարէ. եւ ըստ կամաց վաճառէ. (ճթ)* որ անարգի յորդոյ իւրոյ կամ թէ այլ անօրէնութիւն գործեն որդիքն վասն նորադնացն. իշխանութիւն ունի հայրն տանել զնոսա առաջի դատաւորին. իսկ վասն չար գործոց զոր արարին առ օտար մարդիկ.. ոչ տայ հրաման նմա օրէնքս, բամբասել զնոսա առաջի դատաւորաց.

ՃԺ. — Որդիք որ կան ընդ հօր իւրեանց ոչ ունին իշխանութիւն մտանել 'ի թէատրոնս.

ՃԺԱ. — Եթէ ոք տայ մարդոյ գեօղ, կամ ստացուած 'ի պատիւ նորին, կամ տուն կամ ծառայ. եւ տայ նմին թուղթ հաստատութեան, իշխանութիւն ունի այնուհետեւ տիրել նմին որով պատուեցաւ, եւ ըստանալ եւ զնոյն ներհակել մայրէ. քանզի իշխանութիւն չառ յորմէ հետէ գրեցաւ նմին, այլ թէ կամի պատուողն դարձուցանել առ այն որ ետ զնոյն իւր, դարձուցանել թղթով եւ ինքն տիրէ նմին միշտ.

ՃԺԲ. — Եթէ բաժանի հայրենի ժառանգութիւն 'ի մէջ եղբարց. կամ թէ այլ ինչ բաժինք, եւ լինի առաջի վկայից, եւ ոչ լիցի 'ի մէջ նոցին թուղթ, հրամայէ օրէնքս որ ճշմարիտ է այսպէս 'ի բաժանումս.

ՃԺԳ. — Եթէ բամբասէ մարդ զմարդ վասն պիղծ գործոց, չտայ օրէնքս իշխանութիւն վայրապար. իսկ թէ բամբասողն կարող է կացուցանել, համարձակ է. այլ թէ ոչ կարէ հաստատել. վճեսցի որպէս զայն ինչ որ եդ 'ի վերայ առն, զոր յիշատակեաց 'ի չարն.

ՃԺԴ. — Եթէ մարդ առնու մանուկ եւ գրէ զնա որդի իւրն օրինօք, թէ կամի վերստին արձակել զնա յիւր ժառանգութենէն այնպէս լիցի եղանելն 'ի նմանէ առաջի դատաւորին որպէս բնութեամբ որդոյն.

ՃԺԵ. — Հարցումն. Է կարելի մարդոյ տալ վայրապար 'ի վերայ այլում սպանումն կամ այլ չար գործս Պատասխանի. Ոչ կարէ տալ,

---

*) Բերլինի ձեռագիրն հոս նոր հատուած մը դրած է (ՃԹ), որով հատուածները համարներն իրարու հետ համաձայն կուգան ասկէ ետքը

բայց միայն թէ սպանածն իւր հայր լինի. կամ այլ ազգական։ Իսկ օտար վասն օտարի թէ առնէ, տայ երաշխաւոր բանին հաստատութիւն խնդրին 'ի նմանէ այնմ չարին որ զրպարտեաց զընկերն։

ՃԺԶ. — Եթէ մարդ՝ բանբասէ զայլ ոք 'ի պիղծ գործս, կարող է այն որ բամբասի, դառնալ եւ բանբասել զչարախօսն իւր։ Նախ քան զարձակել զժողով ատենին, թէ եւ մեծ իցէ չարն զոր առնէ յատենին 'ի վերայ առաջնոյն։ Իսկ դատաւորն քննէ, զերկոցունցն տեսանէ, եւ վճարէ յիրաւացին։

ՃԺԷ. — Թէ ամենայն գողք պարտական են մահու. գողն որ 'ի գիշերի յափշտակէ (,) առաւել պարտական է մահու. եւ այնք որ գիշերն ըմբռնին դատին մահու յօրինացս։ Իսկ որ ցերեկն եւ լուսով գողանան (,) վզենկին միայն։

ՃԺԸ. — Մարդիք որ գողանան զազատս 'ի ծառայութիւն (,) մահապարտք են։

ՃԺԹ. — Մարդիք որ լինին բանսարկու եւ քսմս[ղ]ք (1) յատենի եւ առ դատաւորս, զչափ ստութեան բանիցն կշռեսցէ դատաւորն, եւ ձգեսցէ զնոսա յաքսորս, եւ բազումք 'ի նոցանէ 'ի մահ մատնին օրինօքս։

ՃԻ. — Որք գնան զերեն անաստուծս կամ մարդիք առանց հրամանաց արքունի, 'ի նոցանէ ձգին յաքսորս յօտար աշխարհ. եւ որպէս տեսանէ դատաւորն զխախանման ծանրացուցանէ զվրէժխնդրութիւնն զոր պահանջէ։

ՃԻԱ. — Որ ոք ական հատանէ զտուն վասն գողութեան (,) մահապարտ է։

ՃԻԲ. — Որ ոք առնու գործ մահու ըստ արժանոյն լինի եւ մահուն, եւ պատուհասին, եւ այն որ գործէ վզենակ (,) վզենկեցնէ զնա օրի[ն]օքս։

ՃԻԳ. — Ումեք որոյ թողուն ժառանգութիւն կտակաւ, եւ նա առնու եւ ժառանգէ պարտք որ կայ 'ի վերայ թէ շատ թէ սակաւ ինքն վճարէ։ Իսկ թէ չառնու յանձն զժառանգութիւնն, ոչինչ վճարէ հրամանաւ օրինացս, այլ մնայ 'ի նոյն պարտսն։

ՃԻԴ. — Եթէ թողու մարդ ումեք ժառանգութիւն կտակաւ, եւ ոչ առնու այլ տայ յայլ ոք զժառանգութիւնն եւ զպարտսն զոր թողեալ է տէր նորա, ինքն վճարէ, առ որ պարտսն գրեցաւ. զի ինքն ետ զնոյն վերջին սասցողին։

ՃԻԵ. — Եթէ առնու մարդ բան ինչ զհետ ընկերի իւրոյ եւ լինի նմին հաստատութիւն, կամ գրի թուղթ, եւ դնեն գրաւ համար ոսկոյ,

---

(1) Ըստ Բեռլինի ձեռագրին՝ քսփսուք։

կամ երդումն, եւ որ ոչ հնազանդի պայմանին. տայ զդրամն յայն որ հնազանդի, որ ինչ եղաւն 'ի մէջ. եւ հրամայէ օրէնքս վրէժ առնուլ 'ի նմանէ վասն երդմանն. եւ առնուն 'ի նմանէ զպրիսափմանն զոր եդ։

ՃԻԶ. — Եթէ կամի ոք գրել թուղթ եղբայրութեան ընկերոյն առ 'ի լինել նոցա միաբան եւ զոր ինչ ունին, եւ զինչ լինիցի հաւասար իշխան եւ ժառանգ են, փակէ օրէնքս զայս, եւ իբրեւ անհաստատ խափանէ. զի կանայք նոցա եւ որդիքն ոչ կարեն լինել միաբան։

ՃԻԷ. — Որդիք դստերն ոչ պարտին հնազանդել մօրն հօրն, ոչ արուքն եւ ոչ էգքն։

ՃԻԸ. — Բաժանումն որ լինի 'ի մէջ եղբարցն որ են կատարեալ հասակաւ, եւ թէ են տղայք, եւ ունին հոգէբարձուք (,) ընդունելի է յօրինացս թղթով, թէ առանց թղթի. Իսկ եթէ նենգութիւն կամ գողութիւն, կամ զրկանք գտանի 'ի մէջ նոցա, խափանած է յօրինացս այն բաժինքն, զի նենգութիւն գտաւ 'ի մէջն, եւ թէ կայ ոք զրկած յեղբարցն, յորժամ լինի ԻԵ ամաց, հրաման տայ օրէնքս վերստին քննութիւն առնել վասն նորին բաժնին, եւ յամէ այս քննութիւնս մինչեւ 'ի ԻԸ ամն, թէ անցանէ ընդ այս խափանէ օրէնքս այլ զկոյզ նորին. եւ յորժամ քննին իւրաքանչիւր ոք ունի իշխանութիւն 'ի վերայ իւր բաժնին։

ՃԻԹ. — Եթէ ոք առնու տղայ որբ, արու կամ էգ, զորայ ոչ գիտէ զծնօղսն, կամ լինի 'ի չնութենէ, զոր ձգեն 'ի դրունս եկեղեցեաց, կամ յայլ տեղի, եւ սնուցանէ զնա կաթամբ, հարցանէ զօրէնս թէ յորժամ աճէ զի՞նչ է համարեալ ծառայ թէ ազատ (,) հրամայէ նոմոսս թէ որպէս կամքն է սնուցողին, այնպէս եղիցի. թէ մեռանի եւ թողու զնա ծառայութեան անուամբ ծառայ կոչի. թէ որպէս ազատ, որպէս զորդի ազատի ազատութեան որդի։

ՃԼ. — Եթէ տայ ոք մարդոյ 'ի փոխ համար գանձեկանաց որչափ եւ լինի, եւ առնու գրաւական ոսկի (,) արծաթ, կամ այլ ինչ. եթէ կարօտի որ ետ 'ի փոխ եւ ասէ ցպարտականն առ զքո գրաւն եւ տուր ինձ զպարտսն, եւ նա չառնէ փոյթ. յղէ առ նա երիցս անգամ, եւ թէ յայտմանէ անփոյթ առնէ եւ չառնէ պատասխանի եւ չտայ զպարտսն, իշխանութիւն ունի փոխատուն ծախել զգրաւն, որպէս արժանն է. թէ պակասէ յիւր պարտուցն, առնու 'ի պարտ[ա]կանէն (,) թէ աւելի է (,) դարձուցանի տէրն։

ՃԼԱ. — Եթէ մարդ ընկերի իւրում փոխ տայ եւ գրաւ չունի 'ի մէջն, չունի իշխանութիւն որ ետ 'ի փոխ, առնուլ 'ի պարտականէն գրաւական, թէ առնու հրամանաւ իւրով, դարձուցանէ հրամանաւ դատաւորին, եւ որպէս զայն երիցս եւ ապաքանեի իւր դուռն խնդրել զպարտսն իւր։

ՃԼԲ. — Եթէ լինի ներքնատուն այլում, եւ վատուժ է վերնատունն, յիշեցուցանէ ներքնատան բնակողն վերնատան բնակողին. թէ ամրացո զտունս, եւ անփոյթ առնէ, ունի իշխանութիւն որ ՚ի ներքնատունն է, բերել արհեստաւորս, եւ հանէ զչափաւոր ծախս շինութեանն, եւ զկնի Դ ամսոյ տայ վերնատան բնակողին զծախսն. այն որ ըստ իւրում տանն էր բաժին, եւ ոչ զերկուցն, եւ տայ զաշխատանաց վաշխն կրկին. ապա թէ ներքնատունն վատուժ լինի, եւ ասէ որ ՚ի վերն է չինել զորմն ներքնատանն, եւ ամրացուցանել պարտական է, ինքն որ կայ ՚ի վերնատանն տայ զծախսն այսպէս՝ թէ մին վերնատուն է, տայ զծախսն այսպէս. զկէս ծախուցն, եւ թէ Բ կրկին, եւ թէ Գ երեքկին, զի ներքին ատաղձանն է որ բառնայ զվերինն, եւ որմին հարկ է զի յերկուցն նորոգեսցի։

ՃԼԳ. — Եթէ գրաւականէ ոք հող, եւ զի հողն այլում. եւ լինի ՚ի մէջ նոցին պայման, որ զմուտք հողոյն առնու պարտատէրն փոխանակ վաշխի, եւ պարտի միայն զվճարն փոխատուն. ապա թէ գնէ գրաւական էշ, կամ ձի, կամ ոչխար կամ կով, եւ ասէ թէ վաստակն, կամ կիթ անասնոցն քո վաշխ լիցի. ճշմարիտ է (.) իսկ ծնունդն որ լինի ՚ի մէջ. թէ եւ գրաւական են տեառն իրացնին. ապա թէ գնէ ոք գրաւական հօտս խաշանց եւ լինի պտուղն ՚ի մէջն. թէ մուտքն որ լինի յոչխարացն փոխանակ վաշխիցն, նա որ առնու ՚ի ծննդոցն եւ ՚ի կթէն տայ զվարձ հովուացն, եւ կերակուր խաշանցն եւ պահէ անպակաս զթիւ համարին, որ դառնայ ՚ի ստացողն. ապա թէ մարդ գնէ առ իւր ընկերն աղախին, իւր վաստակն լիցի փոխարէն վաշխին, եւ թէ լիցի որդիք յաղախնոյն առաջին բռնացողին են որդիքն, զի ոչ է մարդ նման երկրի, կամ անասնոց որոց շնորհքն Աստուծոյ տայ զպտուղ (1)։

ՃԼԴ. — Եթէ տայ մարդ փոխ ումեք, եւ վասն նորին երաշխաւոր, եւ յերաշխաւորն գրաւական, թէ չվճարէ որ էառ զպարտսն, եւ լինի անդ կարեաց (2) փոխատուին, ծախել զգրաւականն, թէ գնէ զգրաւականն երաշխաւորն, երբ տայ զգինն պարտատէրն, առնու ՚ի նմանէ զգրաւականն, ապա թէ օտար ոք գնէ, ոչ ունի իշխանութիւն պարտականն առնուլ։

ՃԼԵ. — Եթէ ասէ մարդ առ մարդ, տուր դմա անուն ՚ի փոխ, որ հրամայողն է հրամայած է որպէս զերաշխաւոր, կարողութիւն է նմա օրինօք ՚ի փոխատուէն խնդրել զգլուխն։

ՃԼԶ. — Եթէ մարդ փոխ առնու ՚ի բազմաց եւ գրէ նոցա, յորոց

(1) Ըստ Բեռլինի ձեռագրին. իսկ մերն ունէր՝ զբռողն։

(2) Բեռլինի ձեռագիրն ունի՝ անդկարեաց։

եւ տանուտէրն ձեռագիրս. եւ մեռանի եւ ոչ վճարէ զայնոսիկ յորոց էառ զպարտսն. դայ առաջինն եւ առնու զիւր պարտսն. եւ ապա երկրորդն եւ ապա երրորդն. եւ այսպէս լինի վճարն. եւ իւր կնոջ պռուգոն եւ հարսինն տնի 'ի պարտսն. թէ չառ են հարսունքն զառաջնոյն առնու որ եկեալ է 'ի տունն. եւ թէ չվճարի. ապա զերկրորդին առնու.

ԾԼԷ. — Եթէ առնու մարդ 'ի փոխ համար ոսկոյ եւ գրէ տուողին աւպաւտիկս այսինքն պարտուցն գիր. եւ դնէ առ նա գրաւական զոր ինչ եւ ունի եւ. հանդերձք 'ի գոյքն եղինք եւ կամ այլ ինչ որ որ (այսպէս Կոչնուած) չեն յիշած յանուանէ. հրամայէ օրէնքս զնոսին որք վաստակս. տորք են իւր հանել զնոսին 'ի դրաւորականութենէն 'ի գործ իւր.

ԾԼԸ. — Հրամայէ օրէնքս վասն բժշկաց եւ վասն վարդապետաց եւ վասն գիտնականաց գրոց. որք են 'ի քաղաքս եւ 'ի գեօղս ազատ լինել յամենայն հարկաց, եւ չկայ իշխանութիւն զնոսին հարկել. կամ անպատուել. կամ հարկանել կամ անարգել, եւ իրաւացի է տանել 'ի նոցանէ եպիտրոպոս, որ է հոգէբարձու որբոց. եւ պատէ զնոսա նոմոս, զի բժիշկք զմարմինս բժշկեն. եւ վարդապետք զհոգիս. եւ 'ի ձեռն գրագրացն ուսանին մարդիկք զհանդամանոն Աստուծոյ.

ԾԼԹ. — Հարցումն. Եթէ լինիցի մարդոյ նեղութիւն կամ ցաւ, կամ եկանէ վէր, կամ այլ ցաւ լինի 'ի մարմինն. եւ բժիշկն հոգայ զնա ամենայն ուժով, եւ հիւանդն տայ զնորին վարձն. Պատասխանի. Ոչ ունի իշխանութիւն մարդն դառնալ եւ ուզել 'ի բժշկէն զոր ինչ ետ թէ առողջ է թէ ոչ. այսպէս եւ այն որ տայ զխալասութիկոսն ոչ կարէ դարձեալ առնուլ զվարձս ճարտասանացն, թէ լինի իւր բան թէ ոչ.

ԾԽ. — Եթէ տայ մարդ մարդոյ 'ի փոխ թիւ դահեկանաց, եւ դնէ պայման մինչեւ Զ ամիս վճարելոյ. չունի իշխանութիւն ուզել յառաջ քան զպայմանն. եւ թէ առնէ լրբութիւն եւ նեղէ, 'ի խնդրելն կորուսանէ եւ զգլուխքն.

ԾԽԱ. — Հարցումն. Է փարող հոգեբարձուն որ է 'ի վերայ որբերոյն խնդրել վարձս յաղագս սննդեանն. Պատասխանի. Յորժամ գան 'ի կատարեալ հասակն, ապա խնդրէ. Իսկ 'ի ժառանգութենէն, զոր ունին ոչ է պարտ խնդրել. եւ զայս ասէ հոգեբարձուն առ դատաւորն, եւ նորա իրաւամբքն խնդրէ 'ի կատարեալ հասակէն, եւ ոչ առանց դատաւորին յուցանելոյ.

ԾԽԲ. — Եթէ մեռանի մարդ առանց կտակի, եւ թողու ժառանգ (1) որդիս կամ դստերս եւ հանդիպի միում մեռանել 'ի նոցանէ. ժառանգեն զնա իւր եղբարքն. եւ թէ մայրն կենդանի է (,) հաւասարէ (2) 'ի բաժինսն.

---

(1) Բերլինի ձեռագրին ունի՝ ժառանգորդս.
(2) » » » հաւասարի.

ՃԽԴ. — Ն՛ է մի որդի է մարդոյ եւ մեռանի զկնի հօրն (,) հրամանս տայ օրէնքս առնուլ մօր որդոյն Բ մասն, եւ հօրեղբայրըն Ա. մասն. եւ թէ չկայ հօրեղբայր եւ ոչ նորին որդի. ժառանգէ զամենայն մայրն, եւ քեռիքն եւ նոցին որդիքն ոչ մտին 'ի ժառանգութիւնն. որչափ մայրն եւ հայրենի ազգն կան. ապա թէ չկան, գան 'ի ժառանգել քեռիքն. եւ թէ չառնու այր մայրն՝ ընդ որդւոյն ժառանգէ, որպէս գրեցաք. ապա թէ առնու այր, չգայ 'ի ժառանգութիւն. այսպէս եւ քորքն ժառանգեն զերբանց հայրենիքն. թէ ոչ են պսակած. իսկ եթէ հանած են, բերեն զպռուգոն խառնեն եւ ժառանգեն ընդ եղբարսն. եւ թէ մայրն հետ հօրն մեռանի եւ չգիտէ կտակ, ժառանգեն զամենքն ընդ մայրն, հետ եղբարցն

ՃԽԴ. — Մարդ վասն Աստուծոյ սնուցանէ որբ եւ չէառ կուրատորութիւն, որ է վերակացութիւն նօմոսով. եւ խնդրէ 'ի նմանէ կամ դատաւորն եւ կամ այլ ոք պարտք ոչ է իրաւացի մինչեւ կատարին հասակաւ. ապա թէ ունիցին որբքն հող կամ տուն, առնու պարտատէրն զայն եւ գործէ եւ վարձէ եւ գրէ այսպէս. Ես այս անուն որ տուի զայս անուան մարդոյ զանդաստան կամ զայգի. առ իս գրաւական այս գրովս վկայութեամբն, եւ ցանէ եւ ուտէ զմուտսն. եւ որպէս խորհի առնել. եւ մնայ 'ի ձեռին նորա տունն եւ տեղն. մինչեւ լինին որբքն ԻԵ ամաց. եւ յետ այնր գան եւ խնդրեն զգրաւեալն 'ի նմանէ որ առն. եւ հաշւին զմուտք տարեացն. զոր կալաւ եւ զվաշխն. թէ լինի աւելի դարձուցանեն յորբերն. եւ թէ պակաս լինիցին որբերն.

ՃԽԵ. — Հարցումն. Եթէ են մարդոյ որդիք եւ գնաց մինն 'ի նոցանէ առնուլ դահեկան փոխ, կամ վասն վաճառականութեան, կամ յայլ պէտս եւ մեռանի որդին որ էառ, կամ փախստական լինի յայլ աշխարհ, ունի իշխանութիւն պարտատէրն ուզել 'ի նորին հօրէն զպարտսն թէ ոչ.

Պատասխանի. Հրամայէ օրէնքս ոչ խնդրել 'ի յօրէն. եւ ոչ յեղբարցն. իսկ եթէ ցուցանէ. թէ հայրն կամ եղբարքն ունին յայն իրացն աւանդն, կամ այն որդոյն գտանի առ իւրեանքն իրք առնու 'ի պարտքն. Իսկ եթէ պարտկանն ոչ ունի ժառանգող եւ ոչ ստացուածս (,) վնասի փոխատուն.

ՃԽԶ. — Եթէ որդին կամ դուստրն գողանան 'ի ստացուածոց ծնողացն, կամ զգիր յիշատակի եւ վաճառեն. եթէ առ ինքն են որդիքն, կշտամբէ զնոսին, որք պարտեցին եւ առին 'ի նմանէ զայն (,) եւ թէ ի զրուցն եկն իբրեւ զգող եւ էառ, դատաւորին իրաւամբքն դարձուցանէ.

ՃԽԷ. — Որ ոք ժառանգէ յիւր հայրենի ազգականացն. եւ առնու զտուրսն կտակաւ (,) ընդ իշխանութեամբ հօրն է ժառանգութիւնն. եւ 'ի նորին կամսն. ապա թէ մօրն ազգականքն թողուն մանկանն ինչ կտակաւ եւ տան 'ի հայրն, ոչ ունի իշխանութիւն պակասեցուցանել 'ի նմանէ, բայց թէ մեռանի առաջի նորա.

ԾԽԸ. — Եթէ գնէ մարդ սուանդ, եւ կրակ անկանի ըստ պատահմանն եւ այրէ, եւ ճշմարիտ է այս, պարտ է 'ի վճարելոյ սուանդապանն. վասն զի 'ի տանն իւր կրակն գնոյն ճարակեաց. այսպէս եւ թէ գող առնու, կամ յափշտակող աւազակք 'ի տուեցելն պարտ է պահօղն.

ԾԽԹ. — Եթէ առնէ մարդ 'ի պանդոկի եւ ունի 'ի նման ուղտ, էշ. եւ կամ պախրա եւ ձի, եւ տայ վարձ պանդոկապետին եւ ցուցանէ զանասունն, թէ պատահի գողանալ, հրամայէ օրէնքս պանդոկապետին վճարել զգինն, որչափ եւ արժէր. այլա թէ բազում աւուրս եւթ եւ եկ արար ընդ նոսա, եւ տայ միայն 'ի մանուկն պանդոկապետին եւ չպատահի հայրն; եթէ կորնչի, տայ զկէս գնոյն.

ԾԾ. — Իսկ եթէ թողու մարդ զգրաստ իւր 'ի պանդոկն, եւ չաւանդէ յոք 'ի սպասաւորացն, իսկ թէ պատահէ կորուստ (,) մեղս ոչ ունի այնմ պանդոկապետն (1). բայց միայն երդումն առնեն, զի չեն գիտացեալ. եւ ոչ պահող իւրացն, եւ Քրիստոսի փառք յաւիտեանս ամէն —




(1) Ստորագծուած բառերը Բերլինի ձեռագրին մէջ են՝ «չվճարենկի ինչ պանդոկապանն»։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

—

Յառաջաբանիս սկիզբն ըսած եմ, որ այս ձեռագրին գաղափարողն եղած է հանրածանօթ Ոսկան վարդապետէ տարբեր Ոսկան մը։ — Ոսկան Տէր-Գէորգեան Յովհաննիսեանց Երեւանեցի, — առանց սակայն յայտնելու թէ ո՞վ է այս անձնաւորութիւնը։ Արդ իբրեւ ծանօթութիւն կաւելցնեմ հոս, թէ յիշեալ գաղափարողը մեր մատենագրութեան մէջ ծանօթ Ոսկան Գէորգեան Յովհաննիսեանց Երեւանեցին է, որ 1856-ին Մոսկուայի մէջ հրատարակած է Սմբատ Գունդստապլի Տարեգրոց առաջին տպագրութիւնը։



# ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԲԱՌԻՑ.

Անտիգնատուս. առանց կարծեաց.

Ապաւտիկ. մուրհակ. յն. ὑποθήκη = ապահովութիւն. գրաւական.

Առհաւատչեայ. Տ. Ռիմոն.

Բամբասել. ամբաստանել.

Դիմոս. յն. δῆμος = ժողովուրդ.

Դրախտ. արտ. այգի. պարսկերէն direkht = պարտէզ.

Եպիտրոպոս. Տ. Պիտրոպոս.

Զխոլաստիկոս. յն. σχολαστικός = հռետոր, իմաստասէր.

Կումաչ. թուրքերէն kumâš = կերպաս, étoffe.

Կուրատորութիւն. վերակացութիւն. լատին. curátor=վերակացու.

Հոգէբարձու. Տ. Պիտրոպոս.

Հռոգ. ռոճիկ. յն ῥόγα = վարձք. պարգեւ.

Ձգած տղայ. ընկեցիկ մանուկ.

Մահր. վարձանք, տըւար, տուաւ, տուար, տվար. փեսին կողմէ հարսին տրուած նուէր, իսկ հարսին կողմէ փեսին տրուածը կը կոչուի պռօյգ. Արաբերէն mahr = օժիտ

Նոմիկոս. յն. νομικός = օրէնսգէտ.

Նոմոս. յն. νόμος = օրէնք.

Պախրա. պախրէ, պաճար. արաբերէն bakareh = կով. արջառ.

Պիտրոպոս. եպիտրոպոս, հոգեբարձու. յն. ἐπίτροπος = խնամակալ, tuteur.

Պոման. պայման.

Պռիստիմոն. յն. πρόστιμον = պատիժ.

Պռոյգ. օժիտ, dot. Տ. եւ Մահր.

Ռիմոն. առհաւատչեայ. նոր պարսկերէն ramûn = ռիմոն · գրաւական, arrhes.

Ստացեալ (որդի). (enfant) adoptif, հոգեզաւակ.

Վարձանք. Տ. Մահր.

Վզենակ. վնաս, dommages-intérêts.

Վզենեկել, Վզենկել. վնասել, տուգանքի ենթարկել.

Վըղեն. Տ. Վզենակ.

Տըւար. Տ. Մահր.

Տիաթիկ. յն. διαθήκη = կտակ.

Տուաւ, Տուար, Տվար. Տ. Մահր.

Քամող. գրգռիչ, խառնակիչ.

Քօրիսկոպոս. քորեպիսկոպոս.